ԵՐԵՔ

# ԹԱԳԱՒՈՐ ՄՈԳԵՐՈՒ ԶՐՈՅՑՆ

# ԵՐԵՔ

# ԹԱԳԱՒՈՐ ՄՈԳԵՐՈՒ ՁՐՈՅՑՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

ԵՒ ԱՆՈՐ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

Ի

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ



ՎԵՆԵՏԻԿ — ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

*ՌՅԾԹ* — 1910

# ԵՐԵՔ ԹԱԳԱՒՈՐ ՄՈԳԵՐՈՒ ՋՐՈՅՑՆ[1]

Ին Չ ծանօթ գրաւոր զրոյցներն հինգ հատ են թուով։ Աստնցմէ 3–4ը՝ որոնք կը գտնուին Մայրավանացս թիւ 1095 (Լ. Ոսկեփ.), թիւ 456 (ԺԸ. ճառընտիր), թիւ 1447 (ԻԴ. ճառըն.), թիւ 569 (ԼԵ. ճառըն.) և թիւ 986 (ԺԸ. Ոսկեփ.) գրչագիրներուն մէջ, արդէն հրատարակուած են ի Վենետիկ 1898ամին (տես Թանգարան հայկ. հին և նոր դպրութ. Բ. հտ. Անկանոն Գիրք Նոր Կտակ. եր. 267–306)։ Ուստի աւելորդ համարեցայ զասոնք ծայրէ ծայր ընդօրինակել, գուշակելով որ դուք անձամբ եւս պիտի ուզէք կարդալ զանոնք։ Այս Ձեռագիրներս, – որոնք ըստ իս ԺԴ. դարէն վերջ գրուած են անտարակոյս, – թէպէտեւ իրարմէ աւելի կամ պակաս միջադէպեր կը պարունակեն և մանրամասնութեանց մէջ իրարմէ կը տարբերին, սակայն ընդհանուր առմամբ ամէնքն ալ մէկ հասարակաց յաղբերէ կը յառաջագային։ Եւ այս բանիս յայտնի ապացոյց են՝ նախ և առաջ երեք Մոգերու (Թագաւորներ) անուանքն և աշխարհները, ուսկից կու գան. այսինքն «Գասպար՝ Թագաւորն Հնդկաց, Բաղդասար՝ Թագաւորն Արաբացւոց, և Մելքոն (նաեւ Մելգոն) Թագաւորն Պարսից»։ Բ. Աստուծմէն Ադամայ յանձնուած գրաւոր դաշինքը կամ խոստումը (դրախտէն արտաքսուելէն և Աբելի մահուանէն վերջ), թէ «Ի վեցհազարերորդ ամի վեցերորդ օրն առաքեմ զմիածին Որդին իմ զԲանն Աստուած, որ եկեալ մարմնանայ ի զաւակէ քումմէ, և լինի Որդին իմ՝ որդի մարդոյ, և զքեզ դարձեալ յառաջին փառսն կանգնեսցէ», և այլն, զոր գրեալ և մատանեաւն Աստուծոյ կնքեալ՝ Մոգերը մանկացելոյն Յիսուսի կը ներկայացնեն որ բանայ։ Գ. Ընծաները (ոսկի, կնդրուկ, զմուռ) Յիսուսի մատուցած և երկրպագութիւն ըրած ժամանակ (առանձինն) իւրաքանչիւրին ...

1. «Բազմավէպ»ի մէջ (թիւ 7 Յուլիս, եր. 291) ըրած մեր յայտարարութեան համաձայն կը փութանք հրատարակել մեր գրուածն ամբողջութեամբ, ինչպէս որ փափաք յայտնած էր մեզ հրատարակուած տեսնել յիշեալ գիտնականը, Ապրիլ 10 մեզի գրած հետեւեալ նամակովն այսպէս.

Mein theuerer und verehrter Freund,

Mit herzlichstem Danke lasse ich Ihnen beifolgend das Manuskript Ihrer vortrefflichen Abhandlung über die Dreikönige oder Magier wieder zugeben, nachdem dasselbe wesentlich um der Hauptsache noch (im Excerpte) in das betreffende Kunsthistorische Werk aufgenommen worden ist, allerdings nur in deutscher Version, da ein Abdruck des armenischen Textes nicht angängig war nachdem Plane und der Anlage des fraglichen Werkes.

Da nun aber die ganze Abhandlung meines Erachtens im ethnologisch-linguistischer Hinsicht von *ausserordentlicher Wichtigkeit ist*, so wäre zu wunschen, dass die ganze Abhandlung im Armenischen Originaltexte publiziert wurde (eventuell auch mit Übersetzung in eine moderne europäische Sprache, und möchte ich Ihnen, mein verehrter Freund, dieses schöne dankenswerte Werk angelegentlich zur Ausfuhrung anempfehlen ... — Ihr ergebener Dr. Jos. Karst.

Ազգագրական և պատմական նիւթերով պարապող գիտնոց մեր այս գրուածը եւրոպական լեզուով երբ ծանօթացնելու առիթ ունենանք, պիտի ջանանք ի լոյս ընծայել, զունաւոր լուսատպութեամբ, նաեւ Մոգուց երկրպագութեան մի քանի պատկերներ եւս մեր ընտրելագոյն Աւետարանաց մէջէն, յուսալով այնու ո՛չ միայն նոր նմոյշներ տալ հայկական գեղարուեստին, այլ և նպաստել Հուգոյ Կէհրէրի դեռ նոր հրատարակած չքնաղ գործին, որուն բովանդակութիւնը ծանօթացուցած ենք արդէն միրազնեայց «Բազմավէպի» յիշեալ թիւին մէջ հրատարակած մեր նախընթաց գրախօսականով։

քանչիւրին կրկնակի երեւցած ղարմանալի տեսիլները[1], որոնք չորս յիշատակարաններուն մէջ ես կը նոյնանան հանդերձ փոքր ինչ տարբերութիւններով։

Այս յիշատակարաններէս առաջինին մէջ (որուն խորագիրն է՝ «Վասն աւետաւոր հրեշտակին և քարոզելոյ գլղութին Ս. Կուսին Մարիամու Աստուածածնին») ուշադրութեան արժանի է հետեւեալ պարագայն, այսինքն՝ Աւետման հետ կապելը Մոգուց գալուստը, այսպէս... «Զի յորժամ հրեշտակն աւետեաց Մարիամու ի Նիսան ամսոյ էր հնգետասան, որ է յԱպրիլի վեց, յաւուր չորեքշաբաթու և յիններորդ ժամու աւուրն. և նոյնժամայն հրեշտակն ընթացաւ և գնաց ի կողմանս Պարսից, և աւետիս ետ մոգուցն թագաւորաց՝ գալ նոցա յերկրպագութիւն նորածին մանկանն. և նոցա առաջնորդեալ աստեղըն՝ զօրացն ամենեցուն՝ զամիսս ինն։ Ապա եկեալ հասեալ ժամանակ ծննդեան սրբոյ կուսին. քանզի յայնժամ թագաւորն Պարսից զօրաւոր էր քան զամենայն թագաւորսն Պարսկաց, որ էին յաշխարհին յարեւելից։ Սոքա՝ որք էին թագաւորք Մոգուցն, եղբարք երեք. առաջինն Մելքոն, որ ունէր զիշխանութիւն Պարսից. երկրորդն՝ Գասպար, որ ունէր զիշխանութիւն Հնդկաց. երրորդն Պաղդասար, որ ունէր զիշխանութիւն երկրին Արաբացւոց. նոքա միաբանեալ հասին ի ծնունդ կուսին, փութացեալ հասեալ ժամանեցին», և այլն, և այլն։

Երկրորդ յիշատակարանին մէջ դիտողութեան արժանի է նախ Յիսուսի Քրիստոսի ծննդեան ժամանակակէտն՝ որ կը դրուի «Ի թագաւորութեան Հռովմայեցւոց՝ Աւգոստոս կայսեր քառասուն և երեք, և Աբգարու Հայոց և Ասորոց՝ քսան և մի, և Հերովդէսի Հրէից արքայի՝ երեսուն և ութ տարին»։ Բ. Յետ ըսելու թէ «Եւ ահա մոգք յարեւելից եկեալ եկին», և այլն, անդէն կը յարէ ասոնց ի՛նչ ազգէ և յաշխարհէ ըլլալը, ըսելով. «Ոմանք ասեն՝ թէ յորդւոցն Աբրահամու էին ի Քետուրական ցեղէն. և այլք՝ թէ թագաւորքն Արաբայ և Սաբայ, ըստ վկայելոյն Դաւթեայ։ Այլ երեք էին» . . . ։ Գ. Բաց ի Մելքոն, Գասպար, Բաղդասարէն՝ կը յիշուին յանուանէ նաեւ ասոնց տասուերկու զօրագլուխներն կամ հազարապետներն, այսպէս. «Եւ գլուխ զօրաց նոցա կարգեալ իւրաքանչիւր հազարաց՝ հազարապետս, արս երկոտասան, որոց անուանքն են այսոքիկ. Բարխուրիդայ, Դաղմուշայ, Բարդիմշայ, Շահաբանայ, Խորինայ, Դդմիշայ, Դիշբուղայ, Խամառայ, Շաւուրշայ, Աքշիրայ, Շահուրայ, Շամիրամ»։

*
* *

Երրորդ յիշատակարանին մէջ նշանաւոր է հետեւեալ պարագայն, այսինքն՝ յետ ըսելոյ՝ – հանգոյն նախընթաց յիշատակարաններուն – թէ «Էին թագաւորք երեք», անդէն յօգնակի դիմօք կը թուարկէ անոնցմէ իւրաքանչիւրը, իբր գլուխ և ընկեր ուրիշ թագաւորներու, այսպէս. «Առաջինն՝ Մոգուց թագաւորքն Պարսից, որում անուն էր Մելքոն. երկրորդն՝ թագաւորքն Հնդկաց, որում անունն էր Գասպար. երրորդ՝ թագաւորքն Արաբացւոց, որում անունն էր Բաղդասար»,

1. Այսինքն՝ առաջին երկրպագութեան ժամանակ Հնդկաց թագաւորը՝ Գասպար՝ կը տեսնէ զՅիսուս «մարմնով որդի Աստուծոյ՝ բազմեալ յաթոռ փառաց, և զօրք անմարմինք սպասաւորէին նմա»։ Արաբացւոց թագաւորը Բաղդասար կ'ըսէ. «Ես մարմնով տեսի զնա՝ նստեալ ի վերայ զահոյիցն և զօրք բազմութեան առաջի նորա, որք անկեալ երկիր պագանէին նմա»։ Իսկ Պարսից թագաւորը Մելքոն հարցեալ՝ կը պատասխանէ. «Ես մարմնով տեսի զնա ի չարչարանս մեռեալ, դարձեալ յարուցեալ կենդանացեալ»։ Երկրորդ օրը երկրպագութեան գացած պահուն ի միասին, Գասպար փոխանակ իր առաջին տեսլեան՝ Բաղդասարայ նախընթացաբար ունեցած տեսիլը կը տեսնէ. այսպէս ալ Բաղդասար՝ Մելքոնին երեւցած տեսիլը կը տեսնէ, և Մելքոն ալ Բաղդասարին առաջին տեսիլը։ Յոյժ նշանակալից է այս գրոյցս, զոր իրարու պատմելով կ'իմանան երեք թագաւորները և կը հաստատուին մեծ խորհուրդին մէջ։

և այլն։ Իսկ հազարապետներու անուններն հետեւեալ ձեւերով կը յիշատակուին. «առաջին՝ Բարհուրիդայ, երկրորդն՝ Դադիմիշայ, երրորդն՝ Բարդիմիշայ, չորրորդն՝ Շահայպանայ, հինգերորդն՝ Խորինա, վեցերորդն՝ Դրդմիշայ, եօթներորդ՝ Դիշպուղայ, ութերորդ՝ Խուսմարայ, իններորդ՝ Շարուրայ, տասներորդ՝ Խապանայ, մետասաներորդ՝ Շահուրայ, երկոտասաներորդ՝ Շամիրամ»։ Բ. Նշանակելի է նաեւ այն պատասխանը՝ զոր կու տան երեք Թագաւորները Հերովդէսի կողմէն ղրկուած պատգամաւորներուն, ըսելով. «Մեք ի Պարսից եկեալ եմք՝ յարեւելից, որ բուն ազգաւ Մոգք կոչիմք. եկաք աստ աստեղըն առաջնորդութեամբ» և այլն։

Զորրորդ յիշատակարանին մէջ ինչպէս հազարապետաց անուանքն՝ այսպէս և նոտրագրուած բացատրութիւնները յար և նման են երրորդին մէջ եղածներուն. բայց Հերովդէսէն ուղղեալ այս հարցման, թէ «Եւ յորմէ՞ լուեալ զայդ՝ որ ասէք. և կամ ո՞վ պատմեաց ձեզ զայդ... Ցորմէ՞ ստուգիւ ունիք զվկայութիւնն զայն զոր դուք միայն գիտէք և ոչ ա՛յլ ոք», Մոգերու տուած սոյն պատասխանը ուշագրաւ է. «Մեք ի Նախնեաց անտի մերոց ունիմք զվկայութիւնս՝ (այսինքն վասն ծննդեան Փրկչին) գրով կնքեալ և պահեալ. և բազում ժամանակս սպասեալ ծնային հարքն մեր յազգէ յազգ և յորդւոց յորդիս իւրեանց, մինչեւ եկեալ ասացեալ բանն առ մեզ կատարեցաւ. և ապա հրամանաւն Աստուծոյ յայտնեալ՝ եկաք ի տեղիս այս, զոր Տէր եցոյց մեզ», և այլն, և այլն։ Այս յիշատակարանիս մէջ կան երկու ուրիշ նշանաւոր մանրավէպեր եւս՝ որոնք նախորդներուն մէջ կը պակսին, բայց կը գտնուին նոյնպէս թիւ 986 գրչագրին մէջ, զոր վերը նշանակեցինք. այսինքն են. Ա. «Ցորժամ հրամայեաց արքայն (Հերովդէս) ձեռս արկանել ի նոսա (ի Մոգսն) բռնութեամբ, յանկարծակի շարժեցաւ ապարանք տանն՝ յորում նստեալ կային, և չորից կողմանց սիւնքն խախտեալ, և ամենայն շինուածք ապարանիցն անկեալ կործանեցան, և բազմութիւն ժողովոյն՝ որ արտաքոյ անդր էին, փախեան ի տեղւոջէ անտի, և որ ի ներքոյ շինուածոյն էին, անկեալ սատակեցան, և մեռան յաւուրն յայնմիկ ոգիք եօթանասուն և երկուք՝ ընդ մեծամեծս և փոքունս։ Եւ զայն տեսեալ քաղաքացիքն և ամենայն բազմութիւն մարդկան, անկեալ առ ոտս Հերովդէի, աղաչէին և ասէին. Արձակեա զնոսա (զՄոգսն) խաղաղութեամբ, զի երթիցեն զճանապարհս իւրեանց», և այլն։ Բ. Մոգերուն՝ զօրքով Բեդղեհէմ հասած ժամանակ փողերն հնչեցնելը և Ցովսեփայ և Մարիամու վախնալով այրէն դուրս փախչիլն և զՑիսուս մանուկը միայն թողուլը, և ապա խրախուսուած իշխաններէն այրը վերադառնալն և զանի գրկելով Մոգերուն ներկայացնելը։ Արդ՝ իրարմէ ունեցած այս և դեռ ուրիշ մանրամասնութեամբք և տարբերութիւններով հանդերձ, — դարձեալ կը կրկնեմ, — որ այդ չորս յիշատակարաններն եւս իսկապէս մէկ աղբիւրէ յառաջ եկած են, ի հարկէ յաւելումներ և յապաւումներ կրելով հետագայ խմբագրողաց կամ ընդօրինակողաց ձեռքով։

Այդ աղբիւրը սակայն՝ գէթ Մելքոն, Գասպար և Բաղդասար անուանց նկատմամբ՝ ո՛չ զուտ հայկական ծագումն կրնայ ունենալ, և ո՛չ երեքտասաներորդ դարէն առաջ Հայոց ծանօթ եղած է ըստ իս։ Եւ ահաւասիկ առ այս իմ փաստերը։ Նախ և յառաջ երեք Մոգերու անուանքը՝ Մելքոն, Գասպար և Բաղդասար, ո՛չ միայն հեթանոս, այլ և՛ քրիստոնեայ Հայոց քով բնաւ ի գործածութեան եղած չեն մինչեւ յիշեալ դարը, մանաւանդ թէ ԺԶ. դարում հազիւ կը յիշուին այդ անունները կրող հայեր, և այն իսկ յոյժ ցանցառ կերպով. մինչդեռ եթէ ծագումով հայկական եղած ըլլային՝ շատ գործածական եւս պիտ'ըլլային անշուշտ։ Բ. Ներսէս Կլայեցի ԺԲ. դարում Մատթէոս Աւետարանի Մեկնութիւնը գրած և Բ. գլխու 1 տունը մեկնած ժամանակ՝ բնաւ չյիշատակեր յանուանէ երեք Թագաւորները, այլ Աւետարանի բնա-

գիրը մէջ բերելէն ետքը՝ այս հարց ու պատասխանին կու տայ միայն. «Բազում քննութեան պէտք են մեզ՝ թէ ուստի՞ մոգքն էին, և յորմէ՞ աշխարհէ, և ո՞ յորդորեաց ա՛ծ զնոսա, և յի՞նչ պատճառաւ։ Ազգաւ ի Պարսից էին և աշխարհաւ՝ յարեւելից, որպէս աւետարանիչս ցուցանէ. բայց շարժման նոցա պատճառ՝ ո՛չ յինքեանց յատուկ, և ո՛չ յԱստուծոյ առանձինն, այլ ինքեանք յօժարեցան՝ և Աստուած յորդորեաց... Բայց պատճառ հաւաստի երեւելոյ նոցա այս է աստեղն՝ զի շարժեցին յերկրպագութիւն, առ ի լրումն մարգարէութեան, եթէ առաջի նորա նախ Հնդիկք անկցին։ Եւ դարձեալ՝ զի սպառեալ էին յայնժամ մարգարէքն Իսրայէլի, փոխանակ մարգարէիցն երեւեցաւ աստղն ի յանդիմանութիւն նոցա. զի զայն ինչ որ ի մարգարէիցն ոչ կամէին ուսանել, ի պարսկական բարբառոյն լուիցեն. և զի նոքօք բացցէ դուռն հեթանոսաց։ Եւ քանզի վասն այսր ամենայնի հարկ էր գալ նոցա՝ և ա՛յլ իւիք չէր հնար, ո՛չ մարգարէիւ և ո՛չ հրեշտակաւ, այնր աղագաւ իւրեանց ընդելական արուեստիւն կոչեաց... Քանզի աստեղագիտութիւն ի նոցանէ յայտնեցաւ՝ վասն պարզ գոլոյ օդոյն ի խոնաւութենէ ամպոց. զոր և նովին արուեստիւն հաւանեցոյց։ Նաեւ զմարգարէութիւն Բաղաամայ ունէին՝ որ ասացն. Ծագեսցէ աստղն Յակոբայ, և երեւեսցի այր յԻսրայէլի», և այլն։ Ուրեմն այս խօսքերէս յայտնի կը տեսնուի որ մեր Շնորհալի Հայրապետին կա՛մ դեռ ծանօթ չէր Մելքոն, Գասպար և Բաղդասար՝ երեք թագաւորներ հնարող աղբիւրը, և կա՛մ՝ իբրեւ առասպելական մի բան՝ չէ ուզած անոր[1] կարեւորութիւն տալ։ Սակայն «ի պարսկական բարբառոյն» և անոր յաջորդող բացատրութիւններէն՝ զորս նօտրագրեցինք՝ կը տեսնուի, թէ իրեն ծանօթ ըլլալու էր ազգային կամ պարսկական ուրիշ աւելի հին՝ զրոյց մը, որուն վրայ վերջէն պիտի խօսիմ։

Վարդան պատմիչն հաւանօրէն առաջին անգամ ներմուծած է Մելքոն, Գասպար և Բաղդասար երեք թագաւորաց զրոյցը Հայոց մէջ։ Եւ ստուգիւ՝ սա իր Պատմութեան մէջ (տես տպ. Վենետկոյ, էջ 33) կու տայ մեզ հետեւեալը. «Եւ Օգոստոս՝ երկրորդ ինքնակալ՝ զկնի Յուլիոսի, զոր փորահան ասեն, որ և կայսր կոչեցաւ, և թագաւորեաց զկնի չորս հարիւր վաթսուն և երկու ամի խափանելոյ արքայութեանն Հռովմայ. և Օգոստոս եւս մեծացաւ ի ծնանել մեծին Աստուծոյ և ամենակալ արքային, յորում աւուրս եկին մոգքն՝ երկոտասան հազար հեծելովք, և լուեալ եթէ սով է ի Պաղեստին, թողին զզօրսն առ Արգար, և ինքեանք որ մեծքն էին գնացին երկոտասան իշխանօք և հազար հեծելօք. Մելքոն՝ Պարսիկ, Գասպար՝ Հնդիկ, Բաղդասար՝ Արաբ, ոսկի, կնդրուկ, զմուռ ընդ ինքեանս ունելով։ Զայս գրեաց Լուկիանոս ոմն՝ փռանկ (Հռովմայեցի), որ կայր յԱսորիս, առ կայսրն Օգոստոս. Գիտասցէ ինքնակալութիւնդ քո, զի եկին ի հարաւոյ արեւելից արք մեծաշուքք և երկրպագեցին տղայոյ միոյ ծնելոյ ի Պաղեստին, հրաման առեալ ի վերուստ յաստեղէ մեծէ, որ առաջնորդէր նոցա։ Իսկ ի գնալ մոգուցն ընդ ա՛յլ ճանապարհս յաշխարհն իւրեանց, կոտորեաց Հերովդէս հազար չորեքհարիւր վաթսուն և երկու մանկունս՝ յերթալն Տեառն յԵգիպտոս»։

*
* *

Երեքտասաներորդ դարու մի ուրիշ գրիչ, այն է Խաչատուր Կեչառեցին, Վարդանայ աւանդածը կը լրացնէ դեռ աւելի ուշագրաւ պարագաներով։ Սա իր մէկ գրութեանը մէջ — որ կը գտնուի Վիեն-

1. Այս կէտիս նպաստաւոր կ'երեւի Գր. Տաթեւացւոյ աշակերտը՝ Մատթէոս վարդապետ. զի սա ԺԴ. դարում գրած Մեկն. Մատթ. Աւետ. գործին մէջ գրեթէ բառացի կերպով կրկնելով Ն. Կլայեցւոյ յիշեալ տողին — ինչպէս այս ալ Ոսկեբերանինը — կը գրէ. «Գիտելի է զի երեք թագաւորք են, Պարսից և Բաբելացւոց և Արաբացւոց. և անուն նոցա Գասպար, Պաղդասար, և Մելքի»։

նական Հարց Թիւ 39 Ոսկեփորիկ—Հաւաքածոյի[1] մէջ – սոյն խորագրի ներքեւ. Խաչատուր վարդապետի Կեչառեցւոյ ժողովեալ ի առոյգ օրինակէ վասն գալստեանն Աստուծոյ առ մարդիկ, կուսածին թագաւորին Քրիստոսի Աստուծոյ մերոյ զժամանակն և զթագաւոր(ս)ն համառօտ, կու տայ մեզ մոգուց գալստեան նկարագրութիւնը՝ այսպէս. «Մելքոն Պարսից, Գասպար Հնդիկ, Բաղդասար արաբ, զոր և այլք այլ անուանս ասեն. սոյնպէս Մատաթիլատայ, Թեշբայ, Սաղահոտաթայ», և այլն: Ապա այլեւայլ գրոյցներ մոգուց նկատմամբ պատմելով, կ՚ըսուի (Թղ. 179 բ). «Եւ զայս զեկոյց Սեկոնդոս (Secundus) իմաստունն և տեսանող, և Լուկանոս գրեաց յԱւգոստոս կայսրն Օգոստոս. Գիտասցէ ինքնակալութիւնդ ձեր, տէր իմ արքայ, զի եկին յարեւելից՝ ի հարաւային կողմանէ՝ Թագաւորք երեք՝ չքնաղ և զարմանալի պատարագօք, իմաստունք. և հանճարեղք, հմուտ աստեղաբաշխական վերլուծութեանց, և երկրպագեցին ի ծերպս վիմաց մանկան միոյ ծնելոյ ի Պաղեստին՝ առաջնորդութեամբ խոնարհագոյն լուսափայլ աստղի», և այլն, և այլն:

Ո՛չ Սեկունդոս իմաստասիրին տրուած գուշակութիւնն և ո՛չ ալ Լուկիանոսի (Սամոսատացւոյն ?) առ Օգոստոս կայսրն գրած ենթադրական նամակը կը գտնուին մեզի ծանօթ անոնց գրուածոց մէջ. հետեւաբար՝ Վարդանայ և Խ. Կեչառեցւոյ աւանդածները կամ այլընդայլոյ բաներ համարելի են, և կամ բոլորովին շինծու: Եւ ստուգիւ՝ եթէ այդ հեղինակներն, այսինքն Սեկունդոս և Լուկիանոս, այդպիսի բան մ՚ալ գրած ըլլան, կամ Մարկոս Աւրելիանոս կայսեր և կամ Անտոնինոսի ուղղած պիտ՚ըլլային, որոնց ժամանակակից եղած կ՚աւանդուին, և ոչ թէ Օգոստոս կայսեր՝ որ դար մը յառաջ կ՚ապրէր իրենցմէ: Բ. Ցանուն Լուկիանոսի՝ Վարդանէն մէջ բերուած տեղւոյն մէջ պարզապէս «արքմեծաշուքք» կ՚անուանուին Յիսուսին երկրպագութեան եկող մոգերը, մինչդեռ Կեչառեցիէն մէջ բերուածին մէջ ընդհակառակն՝ «Թագաւորք երեք»ի փոխուած են: Խ. Կեչառեցին գէթ ասով բաղդաւոր է մեզ համար՝ որ իր սովորական աղբեր Մելքոն, Գասպար, Բաղդասարէն դուրս՝ կու տայ մեզ Մատաթիլատայ, Թեշբայ և Սաղահոտաթայ անունները, որ ուրիշ աղբիւր մը ցոյց կու տան մեզ լռելեայն: Արդ՝ այս վերջին անուանքս իսկ եթէ առաջիններուն պէս մոգերուն յատկացուած են, այնուհետեւ կրնանք հետեւցնել՝ թէ ո՛չ ասոնք և ո՛չ ալ անոնք են պատմական. վասն զի պատմական յատուկ անուանք ինչ լեզուի ալ թարգմանուին՝ չեն կրնար այսպիսի այլակերպութիւններ կրել, զի այս հասարակ անուանց միայն կը պատահի: Ուստի այս կէտը ի նկատի առած մէկ կողմէն, և միւս կողմէն ալ դիտելով որ Մատթէոսեան Աւետարանի մէջ մոգք միայն յիշուած են առանց Թագաւոր տիտղոսի և որոշեալ Թուի, հաւանական է կարծել՝ որ երեք Թիւը՝ անոնց ըրած գըլխաւոր երեք ընծայից – որոնք են «ոսկի, կնդրուկ, զմուռ» – Թուին վրայ յետոյ ուրեմն հնարուած ըլլայ. այսպէս նաեւ Թագաւոր տիտղոսն ալ անոնց արքայակերպ՝ Հերովդէսին ներկայանալուն և առ Յիսուս իրենց գանձերը բացած ըլլալուն վրայ յերիւրեալ: Նոյն իսկ Մելքոն, Բաղդասար և Գասպար անուններուն մէջ կարելի է գտնել լեզուականօրէն այդ երեք բառերու նշանակութիւնը, դիտելով որ ինչպէս ոսկին՝ այսպէս և Մելքի = Մալէք = Մելիք՝ Թագաւորի նշանակ են. կնդրուկ և Բաաղ = Բէլ (ուսկից կազմուած է քաղդեարէն Բաղ—դա—սար անունը) աստուածական պատուոյ նշանակ է. և զմուռ՝ համաձայն արիական Gas (և gasati) արմատական (ուստի Գաս—պար) մեռելութեան նշանակ է: Այսպէս նաեւ երկոտասան հազարապետաց անուանքն – ինչպէս և զօրաց վերաբերեալ զրոյցը՝ շինուած է Քրիստոսի երկոտասան Առաքելոց Թուոյն վրայ, որոնք յետ յարութեան

1. Տես Հ. Յ. Տ. Ցուցակ. յէջ 169–170.

նորա քարոզեցին երկոտասան ցեղից խաբայէլի և հեթանոսաց, և կոչեցին յերկրպագութիւն մարդացելոյն Աստուծոյ։ Եւ որովհետեւ այսպիսի գրոյցներ բոլորովին օտար են առաջին դարերու Ս. Հարց և վարդապետաց, ուրեմն պէտք է որ միջնադարեան մեկնիչներէն հնարուած ըլլան՝ թիւրիմացութեամբ Սաղմոսին ՀԱ. 10 և Եսայ. Կ. 6 վկայութեանց, որոնք ուրիշ բան կը նշանակեն։ Արդ՝ եթէ այս այսպէս է, այնուհետեւ կրնանք ըսել, որ երկու բան միայն պէտք է ընդունել իբրեւ պատմական և ամենաստոյգ՝ մինչեւ հիմայ մէջ բերուած գրոյցներուն մէջ. այսինքն՝ թէ Մոգեր (անորոշ թուով) եկան յերկրպագութիւն նորածին մանկան Յիսուսի, և թէ երկիրն՝ ուսկից եկան՝ Պաղեստինու արեւելեան կողմը կ'իյնար իր աշխարհագրական դիրքով. այս կէտերս ըստ ամենայնի համաձայն են Մատթէոսեան Աւետարանին, բնաւ տարակոյս չի վերցներ։

Իսկ մոգ բառին նշանակութեան՝ և արեւելեան այդ երկրին վրայ եղած հայկական հին և նոր մատենագրաց ուրիշ կարծիքները մէջ բերելէն կամ մեր կողմէն ո՛ր և է մեկնութիւն տալէն յառաջ՝ կ'ուզեմք ծանօթացնել հայ դպրութեան մէջ պահուած ամենահետաքրքրական յիշատակարան մ'ալ, որ նախընթացներուն հետ ունեցած ի՛նչ ի՛նչ աղերսներով հանդերձ՝ կու տայ մեզ նոր աղբիւր մը. և այս այնպիսի գրոյցներով՝ որոնք ոչ միայն մեծապէս կը տարբերին վերը յիշուած յիշատակարաններէն իրենց մանրամասնութիւններով, այլ և աւելի պատմական և տոհմական իսկ ըլլալու երեւոյթն ունին ծագումով։ Եւ այս յիշատակարանս, որուն խորագիրն է. Նորին ի գալ մոգուցն յերկրպագութիւն Տեառն, Աւետ. Մատթէոսի, կը կազմէ Եպիփան Կիպրացւոյ անուանը տակ կեղծուած ընդարձակ և իր տեսակին մէջ եզական գրութեան[1] մը ԺԹ. ճառը. որուն թէ խմբագրողը սակայն առանց երկբայութեան հայազգի մէկն ըլլալու է։ Գրուածս դեռ տպագրութեամբ ծանօթացած չըլլալուն պատճառաւ՝ քաղելով կը դնեմ հոս անկէց մեր խնդրոյն, այն է՝ մոգերուն ուղղակի վերաբերեալ մասը կամ գրոյցները, որոնք Պարթեւաց և Հայոց ծագման նկատմամբ եւս շատ մեծ նշանակութիւն ունին։

*
* *

« Եւ ի ծնանելն Յիսուսի ի Բեթղեհէմ Հրէաստանի, յաւուրս Հերովդի արքայի, ահա՛ մոգք յարեւելից եկին և ասեն. Ո՞ւր է...։ Նշանացի ցուցանելով զտեղին՝ յաւուրս Հերովդի արքայի, նա՛ և քաջայայտ ասէ զանուն թագաւորին, որ և ի նորա յերեսուներինն ամին, և ի քառասուներվեց (Բ. օր. երեսուներվեց) ամին Օգոստեայ կայսեր՝ մեծին Հռովմայ, և յառաջնումն ամին Աբգարու՝ թագաւորին Հայոց մեծաց, և ի քսան ամին Արշաւրեայ՝ Պարսից արքային։... Եւ արդ իբրեւ ասաց (Մատթէոս) ահա մոգք յարեւելից եկին և ասեն, կարծեցին ոմանք ի վարդապետաց սրբոց՝ մերձ առ աստուածային ծնունդն լինել և զգալ մոգուցն. բայց մեզ ոչ եղեւ գիտելի, այլ իսկապէս՝ իբր տեսութեամբն վերին. և իմացմամբ Հոգւոյն սրբոյ այսպէս դատեցաք՝ որպէս և էն իսկ. զի ի փրկագործ

1. Որ կը գտնուի մեր Մատենադարանի թիւ 1649 նոտրագիր Ձեռագրին մէջ՝ և կը կրէ այս ընդհանուր խորագիրը. Նշանակեալ Եպիփանու արքեպիսկոպոսապետին Կոստանդեայ Կիպրացւոյն. Ասացեալ ի սկզբնագիր Արարածոց եւ յաւետարանական քարոզութեանց որ ըստ Ղուկայ, և այլն։ Բ. օր. թիւ 669, Լիմ անապատին հնագոյն Ձեռագրէ մը ընդօրինակուած է Հ. Ն. Սարգսեանի ձեռքով։ Գ. օր. թիւ 1711, աւելի կատարեալ, նոր ստացայ։ Հայկական թարգմանութիւնն է հին և ընտիր, այլ հաւանօրէն Զ-Է. դարու հայ վարդապետէ մը խմբագրուած է նոր յաւելուածովք. վասն զի ԻԱ. գլխում կը խօսուի Մահմետի վրայ առանց անուան։ Գրուածիս հին և հետեւաբար Եպիփան Կիպրացւոյ ըլլալն մասամբ հաւանական է. քանի որ նա հրէի ծնունդ եղած կ'աւանդուի, զարմանք չէ որ իր ազգի Րաբունիներէն կարենար հաւաքել նաեւ այսպիսի գրաւոր կամ անգիր աւանդութիւններ։

և ի լուսապայծառ յայնմ փառաւոր գիշերին, և ի ժամու երրորդ նմին գիշերոյ ծնեալ եղեւ Բանն Աստուած, մարմնացեալ ի սրբոյ Կուսէն, և ի նմին ժամու և նորա աստղն՝ լուսապայծառ և ջահաւորեալ, որպէս զօրութիւն Աստուծոյ՝ երեւեցաւ յարեւելս՝ ըստ բարձրանալոյ արեգականն յաստիճանն՝ վերին կողմն հիւսիսոյ. ո՛չ ի հաստատութեանն երկնից որպէս զայլ աստեղս, զի ոչ ի նոցանէ, այլ ի խոնարհ, զի տեսցի առհասարակ ամենեցուն ազդեցող և պայծառ տեսութիւն, այլ որոց հրամայեցաւն ի Տեառնէ... Այլ և օ՛ն անդր իմանալի եւս է, քանզի և ել հրաման յՕգոստոս կայսերէ՝ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս. բայց և իսկապէս զարժանն գիտել պարտ է առ ստուգութեան հետս ընթանալով, զի ի տասն Նիսան ամսոյ՝ ըստ հեբրայեցեացն և ըստ լուսնական համարոյ, այլ և ի վեցն յԱպրիլ ամսոյ՝ ըստ տումարական արհեստի և ըստ յունական իմաստութեան։ Ուստի և ի նմին աւուր փրկութեան ել հրաման յԱստուծոյ Հօրէ, և առաքեաց զմիածին Բանն իւր՝ Փրկիչ աշխարհի. և ի նմին իսկ փրկաւէտ ժամուն ե՛լ հրաման յՕգոստոս կայսերէ՝ աշխարհագրաւն ազատել զամենայն տիեզերս։ Ուստի և ի վերին հրամանէն հաւատացաք զայն եւս լինել. այլ և նախապատիւ առնելով Օգոստեայ կայսեր՝ զթագաւորսն յարեւելից, և առաքէ առ նոսա արս պատուաւորս հրովարտակօք մեծագին պատարագօք. և իբրեւ աղերսելով խնդրէ ի նոցանէ՝ բանիւ և գրով առնել զաշխարհագիրն ըստ օրինին՝ որպէս և ինքն յիւրում աշխարհին, դարձուցանելով զամենայն փախուցեալսն և զվտարանդիսն աղքատացեալսն և զտնանկսն, որ ի բռնութենէ հարկացն փախուցեալսն ի հայրենի բնակութենէ իւրեանց, և զպանդխտեալսն յերկիր օտար։... Դարձեալ պատշաճ իսկ էր լինել՝ որպէս և եղեւն իսկ. ուստի և զառաջինն, օ՛ն անդր, և յարեւելս առաքելով կայսեր, մինչեւ ի ծովն մեծ Կասբիական, և յարեւմուտս մերձ ի ծովն յՈվկիանոս, և ի հիւսիս.առ ահաւոր ծովն Պոնտոսի, և ի հարաւ մօտ եւս ի մեծաքանչ ծովն Անդրիանուն կոչեցեալ։ Այլ՝ որպէս և վերագոյն ասացաք՝ նախապատիւ առնելով զթագաւորսն արեւելեան. զի նոքա գալոց էին յերկրպագութիւն անդրանկանն Աստուծոյ Հօր և Տեառնորդւոյն կուսածին մանկանն Յիսուսի՝ համանգամայն արարածոց։

Եւ արդ ահա ժամ է մեզ, զի ի մեծի տօնիս սուրբ և աշխարհակեցոյց ծննդեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ գիտել և ճանաչել վասն մոգուցն, թէ ո՞յք, յորո՞ց և յորմէ՞ ազգէ էին, և յորո՞ւմ ժամանակի եղեւ գալ նոցա պատարագօք յերկրպագութիւն նորածին արքային....։

Եւ ահա յայտ իսկ է. այր մի Աբրահամ անուն՝ յաշխարհէն Քաղդէացւոց՝ որ և շնորհօքն Աստուծոյ եղեւ նմա ճանաչել զարարիչն Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս։... Արդ՝ յետ մեռանելոյն Սառայի՝ կնոջն Աբրահամու՝ առեալ Աբրահամ զՔետուրա զաղախինն Սառայի ի կնութիւն, և ծնաւ ի նմանէ Աբրահամ որդիս վեց, զԵմրան և զԵկսան, զՄադան և զՄոդոն և զԵսբոկ և զՍովին, և սնուցանէր զվեցեսին զորդիսն իւր, այլ և ուսուցանէր զնոսա՝ պաշտել զարարիչն Աստուած, որ արար զերկինս և զերկիր։ Ուստի և ինքն Աբրահամ՝ հաւատովն որ առ Աստուած՝ լցեալ եւս էր իմաստութեամբ. նա եւս քաջապէս ուսեալ ի հարց իւրոց, այլ և ի Քաղդեացւոց զարուեստս աստղաբաշխութեան. վասն զի Բաբելացիքն կիրթ եւս լինին այնմ գործոյն.... Նոյնպէս և վարժեալ ուսոյց զորդիսն իւր զվեցեսեան, և ետ նոցա նշան վասն գալստեան օծելոյն՝ կուսական ծննդեամբ՝ յաշխարհս, և հրաշափառ նորայն աստեղն երեւելոյ։ Այլ և յամենայն ստացուածոց իւրոց, զոր ունէր, եղբայրաբաժին արարեալ զնոսա Իսահակայ յեղբօրէն իւրեանց, և յԻսկապէս յեղբօրորդւոյն յԼմանուէլէ, և հրամայեաց նոցա՝ գնալ յաշխարհն արեւելեան. և աւանդապահն բանիւ և գրով ասաց նոցա պահել զոր ուսանն, այլ և ուսուցանել ամենայն զաւակաց իւրեանց և,

*ակն ունել փրկարար զաւակին Տեառն իւրեանց . . . . Եւ յորժամ լինիցի, նոքա փութապէս եկեալ ընծայիւք յերկրպագութիւն օծելոյն և ծնիցելոյն Իսահակայ յեղբօրէն իւրեանց, և յիսկապէս եղբօրորդւոյն յէմանուէլէն, ըստ այնմ որ ասէ. Եղբօրորդին իմ յարեաց զձեռն իւր ի ծակոյն՝ բանալ ինձ զդուռն կենաց մտին։*

*Եւ ողջունեալք ի հօրէն իւրեանց յԱբրահամէ և յեղբօրէն Իսահակայ, այլ և ի մօրէն իւրեանց Քետուրայ, և յամենեցունց առեալ բաժին իւրեանց ի շարժուն իւրեանց և յանշարժուն. և աւրհնեալ ի հօրէն և յեղբօրէն Իսահակայ՝ և արձակեալ յղեցին զնոսա, յանձն արարեալ բարձրելոյն Աստուծոյ։ Եւ նոքա յուղի անկեալ և եկեալ անցին ընդ մեծ գետն Եփրատէս, և բնակեցան ի Միջագետս Ասորոց յարեւելից կուսէ, և եկեալ ի Խառան ի տուն հօրն և հաւուն իւրեանց Թարայի։ Եւ լուեալ Նաքովր՝ եղբայրն Աբրահամու, և իսկոյն ե՛լ ուրախութեամբ ընդառաջ եղբօրորդւոց իւրեանց . . . . Եւ կարգաւորեաց զնոսա Նաքովր հօրեղբայրն իւրեանց ի հողաբլերն Միջագետոցն, և ի լերինս յարեւելից կուսէ բնակելով խորանօք... այլ և ի դաշտական վայրս ըստ եղանակաց տարւոյն։ Եւ հրամայեաց եղբօրորդւոյն իւրոյ Եմրանայ առնուլ ի կին ի սեպհական ազգէն իւրեան։ Եւ ծնաւ Եմրան որդի, և անուանեաց զանուն եղբօր իւրում Եկսան. և Եկսան առ իւր կին և ծնաւ որդի և անուանեաց զանուն նորա յանուն եղբօրն իւրոյ Մադան, յորոյ զարմից երեւեցաւ Արշակ քաջ և Վաղարշակ եղբայր նորա, թագաւորք Արշակունիք՝*[1] *Պարսից և Հայոց աշխարհին։ Ուստի և սուրբն Գրիգոր Լուսաւորիչ Հայոց մեծաց, որ գերազանցէ քան զամենայն սուրբս, և ազգն Կամսարականաց....։ Եւ Եկսան եղբայր Եմրանայ առեալ կին՝ ծնաւ զՍարի և զԹեման և զԳադան. և Գադան ծնաւ զՌագուէլ, և զՆմա́րդուէլ (Բ. օր. Նարդուէլ) և զԱսուրիմ և զԼտուսիմ և զՂովոնիմ։ Եւ Մադան ծնաւ զԳեբար և զԱփեր և զԵնովք և զԱբիդա (զԱբդիա) և զԵգակայ. ամենեքեան սոքա են որդիք Աբրահամու, զոր ծնաւ ի Քետուրայ*[2]*։ . . . .*

*Եւ ասէ Բաղամ . . . ծագեսցէ աստղն Յակովբայ և յարիցէ այր յիսրայէլէ, և հարցէ զիշխանն Մովաբու . . . Եւ գնաց Բաղամ ի տեղի իւր, և շրջեալ ի Միջագետս Ասորոց և ի Հայաստանեաց աշխարհն և ի Պարսկաստան և յամենայն տունն արեւելեան աւելի եւս քան զամս երեսուն և զհինգ. և քարոզեալ ուսուցանէր զոր ինչ եցոյց նմա Բարձրեալն՝ վասն գալստեան կուսական ծննդեամբ սուրբ միածնին իւրոյ յաշխարհ։ . . . .*

*Ոն անդր և իբրեւ լուան որդիքն Աբրահամու (քետուրածինք) զքարոզեալն ի Բաղամայ՝ իբրեւ ուսեալք եղեն յԱստուծոյ. և ձայն աւետեաց տային միմեանց ուրախութեամբ և ցնծութեամբ բազմաւ, և ասէին առ միմեանս՝ մերձ լինել զաւակին Իսահակայ, զոր ուսուցին մեզ հարքն մեր . . . և առաւել եւս խնդային իբրեւ լուան՝ թէ մեծասցի թագաւորութիւն նորա քան զԳոգայն։ Եւ եկեալ ի վերին հրամանէն ի միտս իւրեանց և ասեն այր ցընկեր իւր. եկա՛յք խաղասցուք և գնասցուք յաշխարհն յայն հեռաւոր, և տեսցուք զթագաւորութիւն Գոգայ, թէ ո՛րքան փառաւոր և բարձրագոյն լինելոց է քան զնորայն։ Եւ հաճեալ եւս զմիմեանս՝ ելին ի Միջագետաց Ասորոց ըստ տեսչութեան Աստուծոյ, և յուղի անկեալ՝ գնային բանակս բանակս՝ օր ըստ օրէ և շաբաթ ի շաբաթէ և ամիս յամսոյ։ Եւ ուր անցանէին՝ սիրով ընդունէին զնոսա բնակիչք երկրին, այլ և*

---

1. *Յոյժ կարեւոր և ուսումնասիրութեան արժանի կէտ մ'է այս Պարթեւ Արշակունեաց ծագման նկատմամբ, որոնց մասին աջուձախ բաներ գրուեցան վերջերս։ Ժամանակաւ* A. Carrière *տեղեակ չըլլալով այս յիշատակարանիս գոյութեան, Մ. Խորենացւոյ մտաց գիւտ համարեցաւ և խստօրէն քննադատեց։ Սակայն – ինչպէս ետքէն պիտի տեսնենք – Անանունն եւս (առ Սեբէոսի) նոյնը կ'աւանդէ, հայկական գրոյցէ մ'օգտուելով, նաեւ Հայոց կամ Արմենակայ ծագման նկատմամբ։ Տես և Յաճախապատում, ճառ ի։*

2. *Յովսեպոս եւս յԱ. գիրս Հնախօսութեան նոյնը կ'աւանդէ գրեթէ բառացի կերպով։*

նոքա ճարպով գառանց և կաթամբ և կոգիւ առատաձեռն լինելով ամենեցունց, եւս առաւել տնանկաց և աղքատաց . . . ։ Եւ զի էին նոքա արք խաղաղութեան՝ մնեալ հովուական արուեստիւք, բացօթեայք լինելով հանապազ նշմարէին զաստեղս, և փառաւոր առնէին զԱստուած զարարիչն նոցա ։ Եւ վասն այսորիկ ոչ ոք ի թագաւորաց և իշխանաց հեթանոսաց կամէին լինել նոցա հակառակ, այլ իբրեւ զհարս և զեղբարս մեծարէին զնոսա և յուղարկէին ո՛ւր և կամէին ։ Եւ իբրեւ հասին յաշխարհն Գոգայ և Մոգայ. և բանակեցան անդ երկոտասան դասս ։ Եւ եկեալ թագաւորն Գոգայ զօրօք բազմօք տեսանել զնոսա, և ի ծածուկ ի սրտին զարհուրեցաւ ի նոցանէ, և առ երեսս խնդաց ընդ նոսա։ Եւ առաքեաց առ թագաւորն Մոգայ արուեստաւորս և ասէ . Մեծացաւ թագաւորութիւնս իմ քան զամենայն թագաւորաց, վասն զի արք խաղաղութեան և իմաստութեան (են), այլ և մեծամեծք ստացուածովք՝ որ ո՛չ գոյ թիւ։ Արդ՝ եկեսցես և տեսցես զդոսա միաբան, և կամ առաքեսցիս զպատուաւորս ի դոցանէ առ քեզ ։ Եւ նա լուեալ՝ փութանակի եկն զօրօքն առ եղբայրն իւր Գոգ, զի համակամք էին միմեանց, և ունէին նուաճեալ ընդ ձեռամբ իւրեանց զՊարսիկս և զՊարթեւս և զԱսորեստանեայս և զԽուժադուժսն, և զԲաբելոն, զորս ի Գիրս կանոնաց յիշատակէ՝ զԱդդէ լինել հրամանատար, և քարոզ նոցին՝ առաքելոյն Թադէոսի զաշակերտն ։ Եւ ուրախացեալ երկուց թագաւորաց ընդ գալ նոցա յաշխարհ իւրեանց, թէպէտեւ ոչ ի սրտէ՝ զի երկնչէին ։ Եւ այնչափ մեծարեալ զնոսա առհասարակ ի պատիւ սիրոյ, նա և սեղանակիցս զմեծամեծս նոցա արարեալ զբազում աւուրս իբրեւ զարհուրեալք ի նոցանէ, մինչեւ զարմանալ զօրացն՝ որ ի դրան արքունի։ Ուստի և նոքա յամենայն ընչից իւրեանց, ընծայեցին թագաւորացն երկոցունց ։ Եւ շոքա հրամայեցին նոցա և ասեն. Ամենայն նախարհս մեր առաջի ձեր է շէնն և անշէնն՝ ո՛ւր և կամք ձեր են՝ բնակեսջիք։ Եւ նոքա ասեն. Ծառայք ձեր եմք՝ տամբ և որդովք և անասնովք, միայն աչք ձեր քաղցրութեամբ հայեսցին ի վերայ մեր. և բնակեցան ո՛ւր և հաճոյ թուեցաւ նոցա ։ Եւ օր աւուր զօրանային մեծացեալ յոյժ, և Տէր էր ընդ նոսա, որպէս ընդ Աբրահամու հօրն իւրեանց։ Ուստի և յազգէ թագաւորացն առին աղջկունս կանայս ուստերաց իւրեանց, և եղեն որպէս ազգ մի խառնեալ ընդ իրեարս ։ Եւ անցին բազում ժամանակս , կացուցին թագաւորքն Գոգայ և Մոգայ ի նոցանէ արս իմաստունս ի վերայ քաղաքաց և յաշխարհին իւրեանց ոստիկանս. և եղեն զօրաւորք և հանճարեղք և արիք ի պատերազմունս ազգաց՝ որ հակառակէին նոցա։ Այլ և օ՛ն անդր ի մերձենալ մերոյ փրկութեան , ի ծագել աստեղն Յակոբայ՝ շարժեցաւ պատերազմ ի վերին Հնդկաց և ի Խուժաստանաց , որ յայնկոյս մեծ և ահաւոր գետոյն Գեհոնի։ Եւ թագաւորքն Գոգայ և Մոգայ՝ և որք ընդ ձեռամբ նոցա նուաճեալ եւս էին, ելին գնալ յաշխարհն Հնդկաց և ի Խուժաստան կարծէին եւս զնոսա հնազանդել։ Եւ կացուցին ի վերայ ամենայն թագաւորութեանց իւրեանց ոստիկանս և աթոռապահս յորդւոցն Աբրահամու եկելոցն առ նոսա։ Եւ ետուն զամենայն ամրոցս և զգանձս արքունականս և զքաղաքսն և զդղեականս երկու եղբարցն զԳոգ և զՄոգ ի ձեռս նոցա. և գրեցին մուրհակս, և կնքեցին դիւանական մատանեաւ, և ասացին ընդ բնակիչս աշխարհին , թէ լինիցի դառնալ մեր առ ձեզ, յաղթելով թշնամեաց մերոց, և ահա սոքա մտերիմ և հաւատարիմք մեր, և մեք տեարք սոցա և ձեզ։ Եւ եթէ հասանէ մեզ մեռանել ի պատերազմի , սոցա մնասցէ աթոռս թագաւորութեան մերոյ և որդւոց սոցա. և ազգ որ մնան՝ ծառայեսցեն ձեզ և որդւոց դոցա յաւիտեան։

Եւ աւրհնեալ զնոսա և ողջունեալ հաստատեցին յիւրաքանչիւր տեղիս. և ուստի՞ լինէր այս՝ եթէ ոչ ի հրամանէ Աստուծոյ Աբրահամու, Իսահակայ և Յակոբայ՝ առ ճշմարտութեան յայտնութիւն։ Եւ նոքա ելին մեծաւ և ահաւոր շարժմամբ՝ անյաղթելի

զինքեանս գիտելով, այլ և յաղթել ամենեցուն կառօք և գազանօք և ասքանազեան զօրօք։ Եւ անցեալ ընդ մեծ գետն Գեհոն, և մտեալ ի Խուժաստան և ի վերին Հնդիկս. և իբրեւ յանծանօթս լինելով՝ ոչ գիտելով զմուտ և զելս գաւառին։ Եւ պատեալ զօրացն ի հեռաստանէ արգելին զմուտ կերակրոց և զգինի. և զոր բարձեալ ունէին՝ նուազեցին, և սովալլուկ եղեալ պակասեցան ի զօրութենէ ինքեանք և երիվարք իւրեանց։ Ուստի առ սակաւ սակաւ մաշեցին ի սուր սուսերի և սպանին և զԹագաւորսն և զմեծամեծսն զօրաց նոցա։

Եւ ի նմին ամի Կիւրոս Թագաւորն պարսիկ, զոր յանուանէ աստուածաբանական մարգարէն Եսայի կոչէ, ասելով բանիւ Տեառն. Այսպէս ասէ Տէր՝ ցօծեալն իւր Կիւրոս, որ և մտացն հայելով նշանակէ զՔրիստոս։ Սա եկեալ հարկանէ՝ մեծաւ պատերազմաւ զԴարեհ՝ որդի Աշշարի, և բառնայ զԹագաւորութիւն Քաղդեացւոց. և ինքն նստեալ յաթոռ Թագաւորութեան Բաբելացւոց՝ զամս եօթանասուն, և առեալ կին մի կոյս ի դստերաց Եբրայեցւոց։ Եւ քանզի և ինքն Կիւրոս էր ծնեալ ի վեցեսեան որդւոցն Աբրահամու, որ և յերրորդում ամի Թագաւորութեան իւրոյ արձակեաց ի Բաբելոնէ զժողովուրդն Տեառն մեծաւ փառօք...։ Ուստի և առաջնորդականին իմացմամբ այսպէս դատեցաք՝ զի ի գալստեան երկրորդում իսկապէս օծեալն Յիսուս Քրիստոս . . . ։ Այլ և որդիքն Աբրահամու ի նմին ամի հաստատեցան յամենայն Թագաւորութիւնս աշխարհին Գոգայ և Մոգայ և Պարսից և Մարաց և Ասորեստանեայց և ի Խուժաստանեաց։ Առաքեցին ի Բաբելոն առ Կիւրոս արքայ Պարսից՝ լինել ընդ նոսա սիրով. և զի եղբայր և արեան մերձաւոր էր նոցա յԱստուծոյ։... Եւ ընկալեալ զհրովարտակն նոցա, և ընծայեալ զառաքեալսն մեծաւ պարգեւօք, և եղեւ կատարեալ սիրով ընդ երկոտասան Թագաւորսն որք ի շառաւիղէն վեցեսեան որդւոցն Աբրահամու. որ և տիրելով մեծի Թագաւորութեանցն Գոգայ և Մոգայ, և Պարսից և Մարաց, և Ասորեստանեայց և Սաբայ, և տիրել մեծի Թագաւորութեանցն ինքեանք և որդիք իւրեանց, և որդիք որդւոց մինչեւ ի տասնեւիչորս ազգս, և աւելի եւս քան զամս հինգհարիւր. և այնքան լցեալ եւս էին իմաստութեամբ և հանճարով կատարեալս, այլ և խոնարհք և առատաձեռն իբրեւ զհայրն իւրեանց Աբրահամ, մինչ զի հանճարեղս և մոգքս մակադրեալ կոչէին զնոսա բնակիչք աշխարհին այնորիկ։

Ուստի և քաջ եւս գիտէին զարուեստ աստղաբաշխութեան, քանզի և իմաստնացեալ էին ի նախնեաց իւրեանց և հմուտ ամենայն կարգի աստեղացն։ Ո՛ն անդր, և եօթանասունեւերկու աստեղացն կարգաց, և երկոտասան կենդանակերպիցն, և եօթն Գոտեացն։... Այլ և ի բազմանալն և ի սերելն իւրեանց ի պարսկական և յարեւելեան աշխարհն և ի Թագաւորութեանն Գոգայ և Մոգայ, ուսան և զըղձութիւնս և զհմայս, որպէս զՔաղդէայս. նմանապէս Մովսիսի և Յովսեփայ, այլ և տեսլեամբ մարգարէութեան Դանիէլի՝ որ վասն Օծելոյն...։ Վասն զի Թագաւորքն Գոգայ և Մոգայ սիրով և խաղաղութեամբ լինէին առ Թագաւորսն Բաբելացւոց, և առաւել եւս ընդ բռնակալն Նաբուգոդոնոսոր։ Եւ որպէս առհաւատչեայ՝ սիրոյ ազգաւ առաքեցին յորդւոցն Աբրահամու, որք եկեալ բնակէին ի Բաբելոն, և անուանեաց զնոսա արքայն Պարթեւս։ Ուստի և նոքա ուսան եւս ի Բաբելոն զիմաստս հոգեւորս ի մարգարէիցն յԵզեկիէլէ և ի Դանիէլէ և յԱնգէէ և ի Զաքարիայէ, այլ և յորդւոց գերութեան, որ հանճարեղ և հմուտք էին գիտութեան բարձրելոյն... և եկեալ ուսուցին ամենայն ազգի իւրեանց, զօրինացն և զմարգարէիցն՝ աւանդապահ բանիւ լինելով, այլ և գրով մինչեւ ի գալ օծելոյն կուսական ծննդեամբ. և նոքա պատմէին իրերաց՝ ազգս ըստ ազգի՝ ընդ ժամանակս ժամանակս, ակն ունելով փրկութեան աշխարհի։ . . .

Բայց և աստանօր ի հասանել հզօր և պատուաւոր արանցն առաքելոցն ի

յՕգոստոս կայսերէ ի մայրաքաղաքն Գոգայ՝ ի կատարման ինն ամսեայ, և հինգօրեայ աւետեացն Գաբրիէլի առ սրբուհի կոյսն Մարիամ. ուստի և ի փրկաւէտ աւուրն՝ որ է չորեքշաբաթ, յորում և հինգշաբաթ լուսանայր, վասն զի և այնպէս թուեն իմաստունքն և Եբրայեցիքն։ Արդ՝ ի յիններորդ ժամու աւուրն չորեքշաբաթին մտին իշխանքն Հռովմայեցիքն ի քաղաքն Գոգայ, և երթեալ պատմեցին թագաւորին Գոգայ, որոյ անուն կոչէր Ջահտուն, որ թարգմանի յուսատու. և էր յազգէն Եմրանայ՝ որդւոյն Աբրահամու։ Եւ փութանակի պատրաստեցաւ կոչել զնոսա, մանաւանդ իբրև գիտաց եթէ Հռովմայեցիք են, և յարևմտեայ աշխարհէն եկեալ զամիսս ինն, և զհինգ օր ի ճանապարհի եղով անհանգիստ՝ ըզցերեկն ամենայն և զցայգն՝ ըստ հեշտութեան ճանապարհին։ Ջերմացեալ թագաւորն և հիացեալ յոյժ. և նոքա ետուն զհրովարտակն ի ձեռս նորա. և նա ընկալաւ, այլ և քաղցրացաւ ի տես նոցա. և հրամայեաց մեծաւ պատուով բազմել, և սկսաւ խօսել ընդ նոսա լրջմտութեամբ՝ բերանով և լեզուաւ իսկապէս թարգմանչի։ Ցինն ժամէ չորեքշաբաթոջ աւուրն, մոռանալով զընթրիս երեկոյին, մինչև աւրհնեալ պահու լուսապայծառ գիշերոյն՝ յորում և հինգշաբաթ լուսանայր....։ Եւ էր հրովարտակն ի ձեռս թագաւորին. և տայ նա ի ձեռս ատենադպրին, որով և զամենայն ազգաց գիրս գիտելով նա։ Եւ իբրև սկսաւ ընթեռնուլ՝ յանկարծ և յեղակարծ ժամուն երրորդի գիշերոյն այնորիկ ճառագայթեալ լոյսն գերազանց՝ աստղանման տեսլեամբ՝ առաւել ևս քան զարեգակն թափանցիկ լուսով ի վերայ քաղաքին և ապարանից արքային Ջահտունոյ թափանցիկ լինելով։ Եւ ոչ էր նա ի հաստատութեան երկնից, այլ և թուէր կարի ևս խոնարհագոյնս. ուստի և այնպէս էր՝ զի թէ այնու ճառագայթիւք ի բարձրութիւն երկնից երևեալ ևս էր, ամենայն արարածք լի ևս լինէին լուսով ճառագայթարձակ փայլմամբն. բայց նոցա աշխարհին միայն երևեալ, ուր և խորհրդոյն Աստուծոյ սահմանեալ էր յառաջագոյն։ Եւ տեսեալ զայն թագաւորին՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց՝ երկրպագելով, և փառս վերառաքէր բարձրելոյն Աստուծոյ... զի և ի նմին ժամու յերրորդ պահու գիշերոյն (ծննդեան Քրիստոսի) և նորայն աստղն երևեալ մեծապայծառ փառօք յաշխարհն Գոգայ և Մոգայ, ըստ այնմ. Տեսաք զաստղ նորա յարևելս, և այլն։.....

Եւ թագաւորն զգիշերն ամենայն պշուցեալ ևս կայր ընդդէմ աստեղն. նմանապէս և աշխարհն արևելից որոց ազդէր հրամանն՝ առ տեսութիւն ծերոց և տղայոց. ուստի և առ վաղիւն նոյնպէս երևէր ճառագայթարձակ փայլմամբ ընդ արեգակնային ճառագայթիցն, առաւել քան զնորայն ունելով զեօթնպատիկ զպայծառութիւն արփիահրաշ լուսոյն. նա և լոյս նորա քաղցրահայեաց ամենեցուն ի տեսանել, և ոչ հարկանել շլացուցանէր զհայեցողսն առ նա որպէս արեգակն։ ... Եւ առ վաղիւն հրամայեաց թագաւորն ընթեռնուլ զհրովարտակն՝ զիւրն և զայլոց թագաւորացն՝ որք էին ամենեքեան մի ազգ յորդւոցն Աբրահամու։ Եւ իբրև ծանեաւ խորհրդով զիբացն զօրութիւն, վաղվաղակի առաքեաց առ նոսա՝ փութանակի գալ առ ինքն։ Եւ եկեալ ընթերցան իւրաքանչիւր ըզգրեալսն առ իւրեանս ի թագաւորէն Հռովմայ. և ընկալեալ յօժարութեամբ զհրաման աշխարհագրին, առնելով զայն ըստ հաճոյից նորա ևս առաւել քան զոր խնդրէրն։ Օ՛ն անդր և ինքեանք ժողովեալ զամենայն իմաստունս և զմոգս, և բացեալ զգիրս իւրեանց՝ քննելով ի վերայ աստեղն երևելոյ. և գտանէին զպատուէրս նախնի հօրն իւրեանց Աբրահամու. այլ և ծանեան իսկապէս զառածն Բաղաամայ, զոր և ամբարձեալ զձայն իւր նախագուշակ լինելով գալստեան որդւոյն Աստուծոյ, որ և ասէ իսկ. Ծագեսցէ աստղն Յակովբայ, այսինքն Բանն ի ծոցոյ Հօր, և յարիցէ այր

յիսրայելէ. զմարմինն ասէ, զոր էառ ի սրբոյ կուսէն։... Այլ և հրամանն մեծ արքունի փութացուցանէր զմեծամեծ իշխանսն վասն աշխարհագրին, ես առաւել վասն երկարաձիգ ճանապարհին։ Ուստի և զերիս ամիսս պատրաստեցան ամենայնիւ գնալ զճանապարհայն. նա և թողեալ իւրաքանչիւր ի նոցանէ վերակացուս ի գաւառս իւրեանց, կատարել զհրաման աշխարհագրին խնդութեամբ բազմաւ։ Ուստի և ի Բարձրելոյն Աստուծոյ վարկանէին զելս իւրացն իբրև զիմաստունս և զհանճարեղս։ Իսկապէս և յարդեանցն է իմանալ զիմաստս քաջութեան նոցա առ ամենեսեան։ Վասն զի յորժամ եկն Աղեքսանդր Մակեդոնացի յԵրուսաղէմ, և եմուտ ի տաճարն տեառն և երկրպագեաց անդ Աստուծոյն Իսրայէլի, և ամբարձեալ զաչս իւր յերկինս և ասէ մեծաձայն. Մեծ ես Տէր, ամենակալ Տէր. և ընծայեաց ի տաճարն անօթս ոսկւոյ և արծաթոյ... Եւ իջեալ ի Բաբելոն անհուն զօրօք բազմօք, և հարեալ զարքայն Բաբելոնի զԴարեհ և զամենայն զօրս նորա սպանմամբ սրոյ։ Եւ լուեալ զհամբաւն բարի զոր արար ի թագաւորքն Գոգայ և Մոգայ՝ Սամաղիէլ և Նյաասուէն և ամենայն ազգ որդւոցն Աբրահամու.... Եւ Աղեքսանդր ելեալ ի Բաբելոնէ՝ գնաց յաշխարհն նոցա։ Եւ իբրև լուան, ելին ընդ առաջ նորա սիրով թագաւորն Գոգայ Սամաղիէլ և թագաւորն Մոգայ Նյաասուն՝ տասնեքին ընկերօք իւրեանց, և կառօք և հեծելօք աւելի ես քան զերկոտասան բիւրս. և նա ընկալաւ զնոսա մեծաւ պատուով, և ողջունեալ զմիմեանս՝ արար նոցա ուրախութիւն զբազում աւուրս։ Եւ նոքա շնորհ ունէին նմա վասն տաճարին տեառն և վասն քաղաքին Երուսաղէմի։ Եւ առաջնորդեալ նմա՝ անցուցին զնա յայնկոյս գետոյն Գեհոնի. և կոտորեցին զամենայն Թուրքաստան և զՀնդիկս վերին, իբրև վրէժխնդիր լինելով թագաւորացն Գոգայ և Մոգայ, զոր և նենգութեամբ կորուսեալ էին նոքա յառաջ ժամանակաւ, զոր և կանխաւ ասացաք։ Եւ օժանդակեալ իջին յամենայն աշխարհն Հնդկաց։ Աղեքսանդր արքայ իբրև զօրացեալ եղեւ նոքօք. և մենամարտեալ ընդ Պովրոս հսկայ՝ սպան զնա՝ տիրելով տանն և աշխարհի նորա։ Եւ շրջապատեալ ընդ արևելեան հիւսիսական աշխարհն, և գտեալ ամպարշտեալ զազգս և զազգինս իբրև քսանևչորս թագաւորութիւնս, և հաւանեցուցեալ զնոսա սրով. սակայն ոչ կոտորեաց ի սպառ, վասն զի յագեալ ես էին արեամբ ամպարշտացն. և իբրև ազդեալ նոցա յԱստուծոյ, զի ոչ էր իսկապէս ծագելոց առ նոսա լուսաւորութիւն փառաց աւետարանին Քրիստոսի. և տարեալ արգելեցին զնոսա ընդ մեծամեծ լերամբք արևելեան և հիւսիսի ծովապատ. և փակեալ կնքեցին մարգարէութեամբ. Մի՛ ես ելանել նոցա մինչև ի ժամանակն վերջինս, որպէս և ասէ իսկ։ Եւ հարկաւոր է դառնալ ի կարգ առաջին պատմութեան։

Աստանօր էր թիւ Օլոմպիաթին, զոր կարգեալ էր Եբրայեցւոցն, զոր իմաստունքն Յունաց Բեստեքեստոն անուանեն, և Հայք՝ նահանջ կոչեն, էր հարիւր վաթսուն և եօթն, և ի գարնանային հաւասարակածն, և պատկեր աւուրն կիւրակէ. ելին ի ճանապարհ՝ իբրև պատշաճ և շնորհաւոր համարելով ըստ գիտութեան իւրեանց։ Ո՛ն անդր և յառաջեալ թագաւորն Գոգայ Զահոռուն՝ որդի Արտոռնայ (բ. օր. Արտաւնայ), յազգէ Եմրանայ, և Աշթաւ թագաւոր Մոգայ՝ որ և նա յորդւոցն Եմրանայ՝ յորդւոցն Աբրահամու, որ էր անդրանիկ ի Քետուրայ. ելին սոքա քսան և չորս հազար հեծեալս երիվարօք ուրոյն ի հետևակ զօրաց և ի սպասաւորաց նորա, որպէս օրէն է թագաւորաց։ Առին ընդ իւրեանս կնդրուկս՝ որպէս Աստուծոյ, և ոսկի մատանի՝ որպէս թագաւորի՝ խաչանման յօրինուածով. ընդելուզեալ ակամբք պատուականօք, և զմուռս անուշահոտ և մեծագին՝ իբրև մեռելոյ, և անթիւ գանձս բազումս՝ ի պէտս թագաւորական ծախուց երկայն ճանապարհին. զի ուր և

գնացեն, կարասցեն պարգևս մեծամեծս պարգևել ամենեցուն ի ճանապարհ և յիշխանս՝ իբրև անուն բարի ժառանգելով, որպէս և վայելէր նոցա։ Այլ և յազգէն Եկսանայ՝ Արևն և Ջուազ, որ են թագաւորք Պարսից և Մարաց, նոյնպէս արարին և նոքա գանձիւ և զօրօք բազմօք։ Այլ և ի ցեղէն Մաղունայ՝ Ջարեհու և Արտաշիզ՝ թագաւորք Պարթևաց և Ասորեստանեայց. նոյնպէս պատրաստեցան և նոքա։ Իսկ ի զարմէն Մողոնայ՝ Աշրաւն և Մաքազ, որ և նոքա թագաւորք Խուժաստանեայց՝ արարին ըստ կարգելոյ օրինին։ Իսկ ի սերէն Եղրոկի՝ Անիշրաւի և Տարտնայ՝ թագաւորք Թարսսի և կղզեաց զինեցան և նոքա ընդ սահմանեալ եղբարցն իւրեանց։ Այլ և յարմատոցն Սովիմբայ՝ Մարեփ (Մարխի) և Աւշիր՝ որ և նոքա իսկ էին թագաւորք Արաբայ և Սաբայ վերնոյ, ի կողմանս հիւսիսոյ։

Ուստի և պարծանօք զամենայն պատրաստ արարին ըստ անդրանկան եղբօրն Ջահտունայ՝ թագաւորին Գոզայ։ Այլ և որպէս էին նոքա ամենեքեան քաջարիք և իմաստունք, նոյնպէս և գային պատրաստաբար՝ յառաջընթացս առաքելով զիմաստունս և զհզօրս հետի՝ աստուածանման աստեղն. և վերջապահս կարգելով զարս հանճարեղս և զարիականս՝ ըստ իշխանացն հասելոյ։ Եւ ընդ որ անցանէին՝ զմեծամեծս ընծայեալ զանազան պարգևօք նորագունօք, նա և զքաղցեալս կերակրէին բազմազան խորտկօք... Ոն անդր և քարոզ կարդային վասն որոյ իրաց և հետևէինն։ Եւ ամենեքեան լըւեալ և տեսեալ զնոսա այլ և զաստղն հրաշափառ, տային փառս Նորածին արքային...։ Եւ զի գիտէին ևս ի գրոց և յաւանդութենէ թէ ո՛յք էին նոքա և յո՛րոց. նա՛ և զճանապարհն ընդ որում և հարցն նոցա հասանէր գնալ յարևելս՝ ընդ կողմն հիւսիսի, ի Գոգ և ի Մագոգ։ Եւ աստանօր մինչ գային՝ ի նոյն հետս՝ բերելով զնոսա աստեղն, և իբրև եկին ի Խառան քաղաքն՝ ի հայրենի բնակութիւնն իւրեանց, և գտեալ անդ յառուարեան ազգէն իւրեանց՝ խնդացին յոյժ. և ընծայեալ զնոսա ոսկով և արծաթով, և պատմեցին նոցա զոր ինչ արար ընդ նոսա Աստուածն Աբրահամու, Իսահակայ և Յակոբայ՝ հարցն իւրեանց։...

Եւ եհաս համբաւ գալստեան նոցա յԵդեսիա՝ առ Աբգար թագաւորն Հայոց, և նա ել ընդ առաջ նոցա. և էր մանուկ տիօք, որ և ի նմին ամի ընկալեալ էր զթագ պատուի ի մեծ թագաւորէն Հայոց. և բերեալ զնոսա մեծաւ պատուով՝ եմուտ ի քաղաքն Ուրհայ. և արար նոցա ընդունելութիւն մեծ, և զիւրաքանչիւր ի թագաւորացն ընծայեաց նմանապէս. և նոքա ի մեծագին ականց արարին նմա փոխադարձ սիրոյն։ Եւ փութային գնալ հասանել որում ցանկայինն։ Եւ նա ելեալ յուղարկէր զնոսա երգովք և պարուց դասիւք և հացկաց կատակօք, և խաղարկեալք արամբք ճարտարօք զբօսանս առնէր նոցա։ Եւ իբրև հեռի եղեն ի քաղաքէն իբրև միջօրեայ ճանապարհաւ, հարցանէին ընդ Աբգար, զի նա ուսեալ ևս էր ի հնարուն ժամանակագրաց, թէ յո՞րում վայրի կոտորեաց Յովաբ զերկոտասան հազարսն ի հեթանոսաց, և զթագաւորսն. և զԱսորիս՝ հրձիգ և զՄիջագետս Սոբան (բ. օր. Սոբան). և նա հարցեալ ընդ ատենադպիրսն, և նոքա ցուցանէին ի բացեայ զձորն Աղտից. և նոքա ընդ այն նայեցեալ՝ տային փառս Աստուծոյ Իսրայէլի հարցն իւրեանց։ Եւ աղաչէին զԱբգար դառնալ անդրէն. և նա ոչ առ յանձն, այլ եկեալ ընդ նոսա մինչև ի Գետն Եփրատ, և տեսեալ զքաղաքն որ յայնկոյս գետոյն կոչի Ջուղմաւ, զի այն էր քաղաք Դաւթի, զոր շինեալ յօրինեաց առ Եփրատ գետովն, որպէս և ուսեալ ևս էր յԱստուծոյ վասն իւր, ասելով. Եդից ի ծովու զձեռն նորա, և ի վերայ գետոց զաջ նորա։ Եւ աստղն արփիափայլ եկաց ի միջասահմանն ի վերայ մեծայաղթ գետոյն, ուր խաղք նաւացն լինէին՝ աններկիւղ պահեալ զնոսա։ Եւ հրամայեաց Աբգար արքայ բերել զամենայն նաւս և զնաւակս ի վերուստ ի

վայր իջանելով և ի ներքուստ ի վեր ձգելով զամենայն գետոյն։ Եւ անցուցին զամենեսեան անվնաս, և Տէր ինքն էր ի մէջ նոցա, և աստղն լուսապայծառ հովանի էր նոցա։ Եւ Աբգար տուեալ գանձս բազումս ի մեծ արքայն Ջահտուն՝ ընծայել զնորածին արքայն, և ա՛ռ ի նմանէ՝ երկրպագել ընդ նմա. և ինքն ողջունեալ զնոսա՝ դարձաւ ի տուն իւր։

Օն և անդր և նոքա յուղի անկեալ գնացին ընդ աստուածադիր սահմանս՝ որ յառաջագոյն լեալ ես էր Իսրայէլի, գային ընդ այն առաջնորդութեամբ աստեղն՝ որ և ինքն էր զօրութիւն Աստուծոյ։ Եւ եկեալ ի Պաղեստին և Գեբերայ, և հասեալ ի ծովն Տիբերեայ, և եկեալ ի քաղաքն Սամարիայ. և հոչակ հարկանէր համբաւ գալստեան նոցա ի մեծ մայրաքաղաքն Երուսաղէմ, և յամենայն Հրէաստան և որ զնովաւ ... և ասեն. Ո՞ւր է որ ծնաւ արքայն Հրէից, և այլն։ Եւ նոքա (Երուսաղէմացիք) երկուցեալ ի բազմութենէ զօրացն, փակեցին զդրունս քաղաքին ... Եւ Հերովդէս խոստացաւ պատիւ մեծ առնել նոցա սիրով. և ինքն խորհէր հանդերձ գործակցովն իւրով սատանայիւ. և պատրաստեաց առ ժամայն բազում և ազգի ազգի դեղս մահաբերս, թերևս կարասցէ կերակրօք և ըմպելեօք կորուսանել զնոսա։ Եւ զի՞րդ ընդ Հերովդէս խնդրէին վասն մանկանն արքայի՝ իմաստունքն և հզօրքն, որ զամիսս երեքտասան յուղի անկեալ գային անմոլար և ուղիղ ճանապարհաւ ի հիւսիսոյ, իբրև առխեթելով յաջոյ կողմանէ ի հարաւ՝ մինչև ի քաղաքն յԵրուսաղէմ. վասն զի աստղն հրաշափառ բերեալ մինչև ի դուռն քաղաքին, որ յարևելս կոյս, անհետ եղեալ ծածկեցաւ ի նոցանէ ... վասն այնորիկ տնօրինեալ ծածկէր Աստուած զաստղն, զի քահանայք և դպիրք ժողովրդեանն բերանօք իւրեանց վկայեսցեն վասն գալստեան Օծելոյն ...։

Եւ նոքա իբրև լուան ի Թագաւորէն՝ գնացին. և իբրև շուրջ ածեալ զքաղաքաւն՝ ի հիւսիսոյ կողմանէ՝ եկին մինչև ի դուռն Սիոնի, որ հայի ընդ հարաւ և տանի ի Բեթղեհէմ, և ահա աստղն՝ զոր տեսին յարևելս՝ առաջնորդեաց նոցա մինչև եկեալ եկաց ուր էր մանուկն՝ յաստուածընկալ յայրին, որ և ի նախնումն տուն Եփրոնի կոչեցաւ. ուստի և Եփրոն թարգմանի՝ հող նոցա ի մեռումս։ Եւ իբրև տեսին զաստղն՝ խնդացին յոյժ ուրախութիւն մեծ։ Օ՛ն և անդր հաւատով գրեցին ի սիրտս իւրեանց. այս է աստղ ծագեալ ի Յակովբայ, զոր ասաց ազգայինն մեր Բաղաամ, այլ և զոր ուսաքն յաստուածընտիր հօրէն մերոյ յԱբրահամէ ...։ Այլ և ի նմին ժամու մինչ տակաւին ի դուրս քաղաքին էին, և հրամայեաց Թագաւորն Գոզայ՝ Ջահտուն՝ հարկանել զփողն, արգել առնելով ամենայն զօրացն, և ասաց երկոտասան թագաւորացն՝ իջանել յերիվարացն. նախ ինքն իջանելով և բացեալ զգլուխն և հանեալ զկօշիկս. նմանապէս արարին և նոքա՝ բոկ և հետիոտս գնալով մինչև յարձանն գումբեթաձև՝ զոր կանգնեալ Յակոբայ ի վերայ դամբարանին Հռաքելի, առ յիշատակ նմայ։ Եւ իբրև անցին ընդ այն յառաջ իբրև ասպարէզ մի, և խոնարհեալ աստուածատեսիլ աստեղն մերձ առ նոսա. ուստի և կարծէին ձեռամբ հասանել ի նա։ Եւ քաջապէս նկատեալ տեսին բազմեալ ի միջի նորա տալիթայ՝ որ բարձեալ ունէր մանուկ տղայ ի գիրկս իւր։ Եւ դարձեալ հրամայեաց, և հարկանէին զփողն արգելման. և ասաց քաջարանցն առ հասարակ՝ իջանել ամենեցուն, և լինել բացագլուխ և բոկագնաց հետիոտս. և եթէ ոք զտցի արտաքոյ հրամանին՝ մեռցի։... Եւ իբրև մերձեցան ի Բեթղեհէմ՝ հարկանէին ըզփողն իջանելոյ և հանգստեան։ Իսկ Բեթղեհէմացիք երկուցեալ գային ընդ առաջ նոցա՝ երկրպագելով, այլ և զարհուրեալք ես ի տեսլենէ աստեղ և յազգանազեան բազմութենէ զօրացն։ Իսկ Թագաւորն մեծ Ջահտուն պշուցեալ ընդդէմ աստեղն, որպէս թէ ընդ ո՛ր յառաջնորդեալ տանիցի զնոսա, և նա խոնարհեալ մերձ յերկիր՝

դիմակ նոցա լինելով, որպէս առնաչափ մի, և առ սակաւ սակաւ յառաջ գնալով մինչև ի դուրս հովանոցին՝ զոր շինեալ էր Յովսեփայ, և մտեալ անդ ի ներքոյ բարաւորին, և ճառագայթեալ զհովանոցն և զտունն և զայրն աստուածընկալ։ Եւ զարհուրեալ օրիորդն կոյս՝ ունելով զմանուկն Յիսուս ի գիրկս իւր՝ իբրև ամսոց երից և միոյ ամի, և փախուցեալ եմուտ յայրն, կարծէր ևս թաքչել անդ։ Մտին ընդ նմա Եսթեր և Սողոմէ և Մարի դստերքն Յովսեփայ, որպէս ի պատիւ և ի սպաս պաշտաման։ Եւ իջեալ աստեղն ի հովանոցէն՝ եմուտ ի տունն և թագաւորքն ընդ նմայ. և ընդ աստիճանս աստուածարնակ այրին իջանէր հանդարտաբար, և պայծառացեալ լուսովն ճառագայթէր ի ներքոյ և արտաքոյ՝ իբրև թափանցիկ ելով։ Անդ էին Յովսէփ և որդիք իւր. և երկրպագեցին թագաւորացն, բայց ոչ համարձակեցին խօսել ինչ, զի այսպէս օրինադրեցան ամենայն զօրքն և քաղաքացիքն. յորոյ բերանոյ ելցէ բան և կամ ճիկ ի շրթանց՝ մահու մեռանիցի, մինչև հրամանն արքունի հասցէ և փող հարկանի։ Եւ էր մերձ ի յաստղն Ջահտուն արքայն Գոգայ, որ էր յազգէն Եմրանայ, և էր ամաց եօթանասնից. և զհետ նորա թագաւորն Մոգայ՝ Աշթաւ, որ և նա ի ցեղէն Եմրանայ, և էր ամաց երեսնից. և զկնի նորա Արեն թագաւորն, և էր ամաց հնգետասանից՝ յորդւոցն Եկսանայ։ Եւ երեքեան սոքա մտին զհետ աստեղ՝ իջանելով ընդ աստիճանսն։ Եւ յարուցեալ սուրբ կոյսն Մարիամ՝ ունելով զկոյսն զմանուկն Յիսուս ի գիրկս իւր։ Եւ աստեղն գէմ եղեալ երթայր երեսօք ի մանուկն Յիսուս։ Եւ երկուցեալ կոյսն սուրբ ի տեսլենէ աստեղն, թէպէտ՝ և քաղցրատես ևս էր, գուցէ ասէ, վնաս ինչ լինիցի մանկանն. և տարեալ նստուցանէր զբարձողն արարածոց ի գլուխ մարոյն, իբրև բազմելով ընդդէմ տաճարին Աստուծոյ, և ինքն մերձ կալով որպէս պահապան։ Եւ վառվառեալ աստղն լուսաճաճանչ երիցս անգամ, և եկաց ի վերայ գլխոյ մանկանն Յիսուսի։ Եւ իսկոյն հոտ անոյշ բուրեաց առ հասարակ ընդ ամենայն տիեզերս՝ ըստ այնմ որ ասէ. Նարդոսն ետ զհոտ իւր։

Եւ մատուցեալ թագաւորն Ջահտուն՝ երկիր պագանէր ի վերայ երեսաց իւրոց, և զհետ նորա Աշթաւ, և զկնի նորա Արեն. և անցեալ կային ձեռս ի կապ՝ աչք ի նա հայելով, և յայնչափ խնդոյն արտօսր բազում ցօղէին, խանդաղատելով ընդդէմ մանկանն. այլ և աղերսանօք և իմաստական բանիցն գգուանօք, որպէս և վայելէր արքայի և Տեառնորդւոյն՝ խօսէին ընդ նմայ։ Եւ իջեալ երիցս անգամ և այլ թագաւորքն կարգ ըստ կարգի երեք երեք երկրպագեցին և նոքա՝ նմանապէս առաջնոցն, և կացին ի կարգի ձեռս ի կապ լինելով ըստ օրինին։ Ուստի և արքայն Ջահտուն նախապատիւ հրամայեաց լինել թագաւորին Թարսսի և կղզեաց՝ պատարագս մատուցանել նմայ. ըստ այնմ թէ թագաւորք Արաբայ և Սաբայ պատարագս բերցեն յօսկւոյն Արաբացւոց։ Եւ այլուր. Ամենեքեան ի Սաբայ եկեսցեն՝ պատարագս բերելով կնդրուկ, ոսկի և զմուռ՝ խորհրդով աստուածատուր իմաստութեանն. որպէս լուան իսկ յազգական վարդապետէն իւրեանց Բաղաամայ, որպէս այն զի ասաց. Մեծասցի թագաւորութիւն նորա քան զԳոգայն։ Ուստի և իմացան զնա թագաւոր գոլով, և զի պատմեաց՝ թէ ծագեսցէ աստղ ի Յակոբայ, և այլն...։ Ուստի և մատուցին նմայ պատարագս կնդրուկ՝ որպէս Աստուծոյ, և ոսկի մատանի՝ խաչանման ակամբք պատուականօք ընդելուզեալ՝ որպէս թագաւորի, և զմուռ՝ որպէս մեռելոյ։ Ո՛ն անդր և անցեալք ի հանդիսի հրամանաւ մեծ թագաւորին Ջահտունայ՝ թագաւորն Թարսսի և կղզեաց, Արաբայ և Սաբայ՝ Ահիշրախ, Տարտնահ և Աւշիր [1], ունելով զընծայս

---

1. Կարդալու է Արշաւիր։

խորհրդականս ի ձեռս իւրեանց պատրաստաբար, և եդին ի մսուրն առաջի Տեառնորդւոյն արարածոց, և ինքեանք ամենեքեան անկան ի վերայ երեսաց իւրեանց՝ երկրպագելով մանկանն Յիսուսի։ . . . . Եւ մինչ նոքա զայս ծածուկ խորհրդով մաղթանս առ Աստուածն Իսրայէլի մատուցանէին, և մանուկն Յիսուս քաղցրահայեաց և աստուածանման տեսլեամբ նայէր ընդ նոսա լրջմտութեամբ. և ապա խանդաղատեալ ի վերայ եռընծայ պատարագացն, և ձգեալ զբազուկսն աստուածային և յինքն ամփոփեալ՝ արկանէր ի վերայ բարձուցն ցնծալից։ Եւ տեսեալ Թագաւորացն ուրախացան յոյժ, և գրեցին ի սիրտս իւրեանց՝ ընդունելի լինել պարգևաց նոցա. և ի ձայն բարձր աղաղակեցին՝ աւրհնելով, գովելով, բարեբանելով զԱստուածն Աբրահամու . . . ։ Եւ առժամայն փոյթ ընդ փոյթ հրամայեցին հարկանել զամենայն փողսն ցնծութեան և զամենայն երգարանս։ Եւ ամենայն զօրացն առհասարակ իբրև ընդ մի բերան փառս ի վեր առաքէին բարձրելոյն։ Ուստի և կարգ ըստ կարգի յօրինեալ կային ամենայն գովիչք Թագաւորացն. և յայնչափ գոչմանէ փողոցն և յահագին բարբառոց զօրացն շարժեալ ես լինէր լայնատարած սահմանք Բեթղեհէմի՝ մինչև գալ աղաղակ գոչմանն և հասանել յԵրուսաղէմ։ Եւ ապա ես առաւել դողայր Հերովդէս ի գոչմանէ փողոցն և զօրացն։ Որ և ի նմին ժամու Թագաւորքն երկոտասան դարձան առ Մարիամ մայրն Յիսուսի, և երկրպագելով հարցանէին զողջամբ լինելոյն, նմանապէս և սուրբ քահանային Յովսեփայ և նորայոցն, և յոյժ մեծարեցին զնոսա՝ իբրև զընտրեալս և զմերձաւորս Աստուծոյ։

Էր ժամ երրորդ և պատկեր աւուրն միաշաբաթ իբրև յանդիման եղեն Տեառն։ Օ՛ն անդր և մինչև ցերեկոյն ոչ թողացուցին ումեք մտանել անդ, բայց միայն Թագաւորքն երկոտասան կացին ի սպաս պատուի Տեառն։ Ուստի և ի նոսա նկարեցաւ խորհուրդ երկոտասան Առաքելոցն։ Նա՛ և զօրքն ամենայն կային փողովք և ազգի ազգի արուեստական երգարանօք... Եւ առ վաղիւն դարձեալ մտին երկոտասանքն երկրպագելով։ Եւ յառաջեալ մեծ Թագաւորն Զահտուն, և զհետ նորա Աշթաւ, և զկնի նորա Արեն, և ունէին զգանձս յանօթս ոսկեղէնս, և բացեալ զայն՝ ցիրեցան առնէին զօրն ողջոյն ամենայն Թագաւորքն ի վերայ տանեաց այրին և հովանոցին։ Եւ եկեալ արք և կանայք, ծերք և տղայք Բեթղեհէմի և որք ընդ աշխարհագրաւն մտեալ էին ի գիրս արքունի, ժողովէին զգանձս առ ի պէտս կենաց՝ մինչև յագեցան։ Եւ այնպէս արարին զաւուրս եօթն՝ մինչև կատարեցին զօրքն ամենայն զերկրպագութիւն արարչին Յիսուսի. այլ և ամենեքեան արժանացան տեսանել և երկիր պագանել անտեսանելոյն հրեշտակաց։

Օ՛ն և անդր, կացեալ զաւուրս տասն, և պատրաստեցան դառնալ անդրէն առ Հերովդէս, որպէս և ժամ եդեալ էին նմայ ։ . . . Այլ և օ՛ն անդր յութ և ի տասներորդ աւուրն գրեցին պատասխանի կայսերն Օգոստեայ՝ վասն աշխարհագրին, և վասն գնալոյն իւրեանց անդ. ետուն և զհրովարտակն Աբգարու, զի ընդ այն ժամանակս հնազանդեալ ես էին Հայք և Պարսիկք և Ասորեստանեայք Օգոստեայ կայսերն. և ընծայեալ զառաքեալսն առ ի նմանէ ուղարկեցին զնոսա։ Եւ ինքեանք հրաման առեալ ի տեսլեանն չդառնալ անդրէն առ Հերովդէս, ընդ այլ ճանապարհ գնացին յաշխարհն իւրեանց։

Ուստի և ի տասն Մայիս ամսոյ անցեալ ընդ Յորդանան, ուր Տէրն իսկ յետոյ մկրտեցաւ, և գնացեալ ի Դամասկոս, և անտի անցեալ ընդ գետն Եփրատ, ի հուն անցիցն Թագաւորացն Քաղդէացւոց՝ մինչ գերէին զԵրուսաղէմ։ Եւ հասեալ ի մեծն Բաբելոն, և ել արքայն Արչաւրի ընդ առաջ նոցա բազում փառաւորութեամբ, որպէս օրէն է Քաղդէացւոց՝ առատաձեռն լինել ի մտանել Թագաւորի և յելանելն։ Եւ նոքա պատ-

մեցին նմա զոր տեսին և վասն որոյ աշխատեցան։ Եւ Արշաւրի երանեաց ըզնոսա, որ արժանի եղեն այնպիսի աստուածային տեսլեանն։.... Օ՛ն անդր և բազում պատուով յուղարկեալք և նոքա ի Բաբելոնէ՝ եկին յաշխարհն իւրեանց. և ընդ բազում աշխարհս և գաւառս ընդ որ անցանէին՝ քարոզէին վասն նորածին Աստուածորդւոյն, զոր և աչօք իսկ իւրեանց տեսին և ի գիրկս ընկալան . . . ։

Եւ ինքեանք թագաւորքն երկոտասանքն հրամանաւն Աստուծոյ կացեալ կենդանի, մինչև ելին Առաքեալքն փըրկագործ աւետարանաւն քարոզել զՑիսուս Քրիստոս։ Եւ եկն Ադդէ՝ աշակերտ առաքելոյն Թադէոսի՝ առ նոսա հրամանաւ Հոգւոյն սրբոյ, քարոզելով զՔրիստոս Պարսից և Մարաց և Պարթևաց, Ասորեստանեայց, Խուժաստանեաց և Բաբելոնի, օ՛ն անդր և Գոգայ և Մոգայ և ամենայն գաւառաց՝ որ ընդ ձեռամբ երկոտասան թագաւորացն էին։ Որ և ինքն իսկ Ադդէ մկրտեաց զթագաւորն Գոգայ՝ Ջահտունն, և զթագաւորն Մոգայ՝ զԱշթաւ, և զթագաւորն Պարսից և ըզՀայոց զԱրևն, նմանապէս և զընկերսն նոցա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. զի նա եղև անդ առաջնորդ և հրամանատար, հաստատելով եկեղեցի ի վերայ վիմին, անդրդուելի վիմին հաւատոյ, և կարգեաց անդ քահանայս և սարկաւագունս, քարոզելով նոցա ըզՔրիստոս Աստուած »......։

*
* *

Յիշատակարանս քաղուածօրէն մէջ բերելէն վերջ՝ ներուի ինձ ընել հոս ինչ ինչ համառօտ դիտողութիւններ անոր կարևոր մասանց նկատմամբ, — զորս դիտմամբ նոտրագրեցինք, — Ձեզ վերապահելով, յարգելի բարեկամ, անոնց պատմական, աշխարհագրական և ստուգաբանական (etymologique) մանրամասն քննութիւնը և կամ ճշդութիւնը։ Ա. Դիտել կու տամ՝ որ գրուածիս մէջ ընդհանուր կերպով տիրող գաղափարը — որ բացայայտ կերպով կը շեշտուի գրեթէ ամէն գրոյցի մէջ — այն է, թէ ոչ միայն Աբրահամու օրինաւոր յաջորդաց և իսրայէլի երկոտասան ցեղերուն, այլ և Քետուրայ կամ Կենտուրէն կողմնակի կերպով սերեալ ազգերուն մէջ ևս պահուեցաւ՝ որդւոց որդի և դարուց ի դարս՝ թէ՛ ճշմարիտ աստուածպաշտութեան և թէ՛ Մեսիային կամ Աստուածորդւոյ մարմնապէս ծննդեան գաղափարն՝ ի սուրբ և յանարատ կուսէն, նշանակաւ հրաշափառ աստեղն։ Եւ այդ բարձրագոյն ծանօթութիւնը, զոր Աստուած յայտնեց Աբրահամու, տարածողներն և պահպանողները — նաև հեթանոս ազգերու և արևելեան աշխարհաց մէջ — եղան Քետուրէն ծնած Աբրահամու վեց որդիքը։ Այս ըստ ամենայնի պատմական է, վասն զի Ծնդ. Իե. 1 — 6 վկայութեան համաձայն է. որուն վրայ հաստատուած Ս. Հարք, և մանաւորապէս Եփրեմ Ասորի (Մեկն. Ծնն. տպ. Վենետկոյ, էջ 85) կը գրէ. « Եւ զի ա՛ռ Աբրահամ կին յետ մահուան Սառայի, զի ի ձեռն որդւոց իւրոց, որ լինին յազգս և յազինս և ի տոհմս հեթանոսաց, սփռեսցեն տարածեսցեն հաւատք ճշմարտութեան նորա յամենայն գաւառս։ Արձակեաց զնոսա առ յինքենէ, զի քարոզեսցեն զհաւատս ճշմարտութեան հօրն իւրեանց »։

Երկրորդ կարևոր կէտն կեղծ Եպիփանի աւանդածին, — զոր ես կ՚ախորժիմ սակայն ծագումով հայկական ևս անուանել, — այն է՝ որ Քետուրէն ծնած այդ վեց որդւոց ազգախառնութենէն, որոնք գաղթեցին յԱրևելս, յառաջ եկած ըլլան Պարսիկք, Պարթևք և Հայք. և Պարսից Աքեմենեան թագաւորաց առաջինը՝ Կիւրոս՝ ուղղակի դնելով « ծնեալ ի վեցեսեան որդւոց Աբրահամու » (այսինքն է՝ յազգաց քետուրածին որդւոց), անուղղակի կերպով Պարթև և Հայ Արշակունիները ևս՝ Աքեմենեան ընդհատեալ Հարստութեան իբրև ազգակից և շարունակութիւն կարծել կու տայ մեզ. որ

շատ հաւանական է։ Ցիրաւի, Թէպէտ և Կիւրոսի Քեռուրածին ըլլալու մասին Ծն. Գիրքը լռած է, սակայն Բ. Մնաց., Եզրի, Դանիէլի և յատկապէս Եսայեայ (գլ. Խե. 1–4) անոր վրայ այնքան խօսելն իսկ կռուան մ'է ըստ ինքեան. այսինքն Թէ՝ Աստուծմէ օծեալ Հրէից այդ ազատարարը՝ հոգևորական իմաստով Քրիստոսի փրկչին օրինակ ըլլալէն զատ՝ մարմնաւոր ազգակցութիւն մ'ալ ունեցած ըլլայ հրէական ազգին հետ, ինչպէս որ կ'ենթադրէ գրուածիս հեղինակը։ Իսկ Հայոց և Պարթևաց մասին աւանդածն ոչ միայն հաւանական է, այլ և ունի իրեն իբրև կռուան պատմական վկայութիւններ։

Մեծն Վարդան (տես Մեկն. Ծննդոց) այսպէս կը գրէ. «Իսկ Աբրահամու առնուլն զկենտուրա, որ է խնկեալ, զի ամենայն ազգ սմա է երկնաւոր խոստումն, և մի ոք զինքն աւտարացուցէ յիւր սեփական արարչէն. ուստի ծնան վեց որդիք՝ քարոզք վեցակուսի աշխարհիս. ուստի Արշակունիք և Պահլաւունիք, զորս ի բաց արձակեաց յինքենէ (Աբրահամ) յարևելս, զի ամենայն յոյս իցէ յայն՝ որ նստին յերկինս երկնից ընդ արևելս»։ Անտարակոյս Վարդան՝ Եփրեմի վերոյիշեալ վկայութենէն դուրս ճանչցեր է նաև սոյն գրութիւնը, ինչպէս ցոյց կու տան «Արշակունիք և Պահլաւունիք» կամ Պարթևք բառերը։

Անանունը՝ առ Սեբէոսի (տպ. Կ. Պոլիս 1851, եր. 9) Հայկազունի հարստութենէն՝ Պարթև Արշակունիներու պատմութեանը անցած ժամանակ, հետևեալ կամուրջը կը կապէ, որ յոյժ հետաքրքրական է. «Ի Դամասկոսէ ասեն[1] գնացեալ զՄարսեակն՝ զընդոծինն Աբրահամու՝ փախստական լեալ յիսահակայ, և եկեալ բնակեցաւ առ ոտամբ երկուց լերանցն որ հանդէպ մեծի դաշտին Արայի, յԱրագած կատար և ի Գեղ լեառն։ Եւ լինին նորա երեք որդիք, Փառոխ՝ նա է Եղիազար, և Փառախոտ կոչեն զտեղի բնակութեանն. և Փառականն՝ դաշտ որսոց և արշաւանաց նոցին, որ խառնին յազգ Արամանեկայ»։

Զնայելով որ Անանունի քով (այն է՝ կեղծ Ագաթանգեղոսեան արձանագրութեան մէջ) պահուած հայկական աւանդութիւնը՝ իր արտաքին պարագաներով անկախ է Լպիփանեանէն, սակայն և այնպէս իսկապէս մի և նոյն իրողութիւնը կը շեշտէ. այսինքն է՝ Աբրահամու ընդոծիններուն՝ Հայոց և Պարթևաց հետ ունեցած ազգախառնումը։ Մով. Խորենացին ընդ հակառակն երկու անգամ կը յիշատակէ մի և նոյն իրողութիւնը, և երկուքն ալ համաձայն եպիփանեան յիշատակարանին։ Նախ Պատմութեան Ա. Գրքի Ա. գլխուն մէջ խօսելով Պարթևաց վրայ՝ կ'ըսէ. «Ուստի և Թագաւորեաց Արշակ քաջ, որ ի զաւակէ Աբրահամու, ի քետուրական ծննդոց, առ ի հաստատել բանին Տեառն առ Աբրահամ, Թէ Թագաւորք ազգաց ի քէն ելցեն»։ Ապա Բ. Գրոց ԿԸ. գլխում ուզելով տալ մեզ Պարթև – Արշակունիներու ցեղաբանութիւնը, կը գրէ այսպէս. «յԱդամայ քսաներորդ առաջներորդ նահապետ մեզ զԱբրահամ աստուածային պատմութիւնքն ցուցանեն, և ի նմանէ եղեալ ազգդ Պարթևաց։ Քանզի ասէ. Ցետ մեռանելոյն Սառայի՝ առեալ Աբրահամու կին զՔետուրայ, յորմէ ծնան Եմրան և եղբարք նորա, զոր Աբրահամ ի կենդանութեան իւրում մեկնեաց յիսահակայ, արձակելով յերկիրն արևելից։ Ցորոց սերեալ ազգ Պարթևաց, և ի նոցանէ Արշակ քաջ, որ ապստամբեալ ի Մակեդոնացւոց՝ Թագաւորեաց յերկիրն Քուշանաց՝ ամս երեսուն և մի ... և յետ նորա որդի նորին Արտաշէս ... ապա Արշակ նորին որդի ... որ և զՎաղարշակ զեղբայր իւր Թագաւոր կացոյց Հայոց », ևն։

Ցովսեպոս ևս (Հնախ. Ա. գիրք. գլ. 15) հիմնուած Աղ. Բազմավիպի վկայութեան վրայ, հետաքրքրական տեղեկու-

1. Այս և Մ. Խորենացւոյ աւանդածի նկատմամբ՝ խորհուրդ կու տամ կարդալ Սեբէոսի գիտնական հրատարակչին 5° և 6° Ծանօթագրութիւնքը՝ որ յէջ 20-24։

թիւններ կու տայ Քետուրէն ծնած Աբրահամու որդւոց և անոնց գաղթականութեան մասին՝ ի Լիբիա, և Երջանիկ Արաբիայէն մինչև կարմիր ծով. սակայն Հայոց և Պարթևաց հետ ունեցած ազգակցութեան նկատմամբ բնաւ խօսք չըներ։ Ուստի ակներև կը տեսնուի՝ որ հայ հեղինակներուս մեզ հաղորդածը՝ ազգային հին աւանդութիւն մ՚է։

Երրորդ՝ հայկական յիշատակարաններէն չորս առաջիններուն մէջ՝ Յիսուսի երկրպագութեան եկող արքայք ոչ թէ պարզաբար մոգ կը կոչուին, այլ «Թագաւորք Մոգուց», որ ազգի կամ աշխարհի յատուկ անուն ըլլալ կ՚երևի։ Եւ այս բանս արդէն քաջ կը տեսնուի անոնց առ դեսպանս Հերովդէսի ուղղած սոյն պատասխանէն. «Ասեն մոգքն. Մեք ի Պարսից եկեալ եմք՝ յարևելից, որ բուն ազգաւ Մոգք կոչիմք»։ Իսկ վերջին յիշատակարանն, այն է՝ կեղծ Եպիփանը, դեռ աւելի հետաքրքրական պարագայով մը կը հաստատէ նախընթացներուն աւանդածը, այսինքն նոյնացնելով մոգ թագաւորներու գլխաւորները՝ Եզեկիէլի մարգարէութեան (ԼԸ. 2, ԼԹ. 6) յիշուած Գոգ և Մագոգ անուններուն հետ, որոնք ոչ միայն այս տեղ և Յայտնութեան գրոց մէջ, այլ և Մեթոդիոսի և ուրիշ Հարց վերջաշխարհեան (eschatologique) գրուածոց մէջ՝ աստուածային արդարութեան և ամպարշտաց կործանման վրէժխնդիր գործիք համարուած են։ Դիտելով որ անուանցս վերջինը՝ որուն պարսկերէն՝ ( مغ ) մակ, մավ, միղ ևս կը գրուի՝ միացուած է առաջնոյն հետ, իրաւամբ ուրեմն յիշատակարանիս հեղինակը վերլուծած է զայն ի Գոգ (սեռ. Գոգայ) և ի Մոգ (սեռ. Մոգայ)։ Այս բանս շատ լաւ կը մեկնուի Ծննդոց Ժ. 2 և Բ. Մնաց. Ա. 4 տեղերով, ուր Գոգ առանձին գոյութիւն չունի, այլ Մոգին հետ միացեալ, այսինքն է՝ ըստ Եօթանասնից թարգմանութեան՝ «Մագովգ»։ Եզեկիէլ առաջին անգամ զատեր է զանոնք իրարմէ՝ գրելով «Գովգ և Մագովք»։

Լեզուական այս փոփոխութիւնս՝ նշան է՝ թէ այդ ժամանակ արդէն պատմական յեղաշրջութիւն մ՚ևս կատարուած էր հիւսիս-արևելեան այդ ազգաբնակութեան սահմաններուն վրայ. այսինքն Մոգայ աճումն և յերկուս կամ յերիս ժողովուրդս բաժնուիլն։ Այս ալ ըսեմ՝ որ Մոգ, մոկ, մակ անուան խոր հնութեան յայտնի նշան մ՚է նոյն իսկ անոր միավանկ ըլլալը։ Մովսիսին վերագրուած Հնգամատեանին մէջ մոգ անուան բնաւ չենք հանդիպիր, այլ «գէտք, իմաստունք»։ Դանիէլ (մարգ. Ա. 20, Բ. 2, 27, Դ. 4, Ե. 11, 15) միայն առաջին անգամ ի գործ ածեր է զայն. և ուշադրութեան արժանի կէտ մ՚է Դարեհի արքունիքին ծանօթ մարգարէիս այդ անուան գործածութեան և Զրադաշտ մոգի երևման զուգադիպութիւնը։

Յոյնք և Լատինք ընդհանրապէս Մոգ անունը յուն. μάγος բառէն ծագած կը համարին, իբրև մտածող, նկատող, գիտուն, աստեղագէտ, կախարդ, և այլն. իսկ ոմանք ալ Փիլոստրատոսի[1] հետ հին պարսկերէն է ըսին, և *mag* կամ *magu* (քուրմ) բառին հաւասարազօր։ Արդի համեմատական լեզուաբանութիւնը[2] վերջնոյս կողմն է։

Արդ՝ թողլով բառիս նշանակութիւնը բանասիրաց, և համաձայն հայկական գրոյցիս նկատելով իբրև պատմական կամ աշխարհագրական անուն, կազմուած ի Մագ-Գոգ (= Մակ-Գոգ = Մահ-Գոգ) միավանկ կրկնանուններէն, ո՛չ Հնդկաստանի, ոչ Արաբիոյ և ոչ իսկ Ասորիքի և Քաղդեաստանի մէջ գոյութիւն ունեցեր

1. Տես ի Վարս Ապողոնիոսի Դիանեայ, ուր կ՚աւանդէ՝ թէ հին Պարսիկք Մակ կամ Մոգ կը կոչէին իրենց աստուածները, իսկ յետոյ անոնց պաշտօնէից անցաւ։

2. Տես H. Hübschmann, *Armenische Gram. I. Theil*, s. 195.

է, այլ որոնելի է Մարապարսիկ տէրութեան • և անոր հիւսիսային սահմանաց, այսինքն է Հայաստանի մէջ։ Եւ ստուգիւ այս բանս ակներև կը տեսնուի Մոգուց գալստեան ուղեցոյցէն (itinéraire) իսկ՝ զոր կու տայ մեզ յիշատակարանս։ Սոքա նախ հիւսիս արևելքէն անցնելով ի Գող և ի Մոգ՝ կու գան ի Խառան, որուն համար կ'ըսուի, թէ եղած էր նախկին խանձարուրք իրենց նախնիներուն, այսինքն Քետուրէն ծնեալ վեց որդւոց։ Ապա շարունակելով ճանապարհը՝ կը հասնին յԵդեսիա կամ Ուրհայ, ուր Աբգարէն կը գտնեն արքայական և սիրալիր ընդունելութիւն։ Ապա շարունակելով ուղին՝ Աբգարու ընկերակցութեամբ՝ կուգան ի գետն Եփրատ, ճիշդ Զուգմա կոչուած քաղաքին քով, զոր իբր թէ Դաւիթ շինած էր, կ'աւանդուի. և Աբգար հոն նաւեր բերել տալով կ'անցնէ զամէնքը յայնկոյս գետոյն, և ինքը կը դառնայ յԵդեսիա։ Ապա կը մտնեն ի Պաղեստին ըստ այնմ. «Եւ եկեալ ի Պաղեստին, և հասեալ ի ծովն Տիբերեայ, և եկեալ ի Սամարիա»։ Հուսկ ապա այս կողմէն կը հասնին Երուսաղեմ։

Արդ՝ եթէ ակնարկ մը տանք աշխարհագ. քարտին Ասիոյ, յայտնի կը տեսնենք, որ Հնդկաստան Պաղեստինի հարաւային կողմը կ'իյնայ յոյժ ի բացեայ, և ոչ թէ արևելեան, ուսկից եկած կ' աւանդէ զՄոգս՝ Մատթէոս աւետարանիչն։ Իսկ Արաբիա և Ասորիք կը մնան յայսկոյս և ի հարաւ Պաղեստինու. և հետևաբար՝ հոն երթալու համար ո՛չ Եփրատ անցնելու պէտք կար կամ կարելի էր և ո՛չ ալ յԵդեսիա առ Աբգար։ Ապա ուրեմն կը մնայ իբրև բանաւոր ընդունել՝ որ Մոգերն ի Պարսից[1], ի Պարթևաց և ի Հայոց գալով՝ այդ ճամբան կտրեցին (թերևս իրենց ստորակարգեալ Միջագետաց և Քաղդեաստանի և Ադիաբենաց փոքրիկ իշխաններով), և թէ այդ սահմաններուն վրայ եղած էր և որոնելի է Մագ–Գովգայ, կամ լաւ ևս Մոգայ և Գոգայ, այսինքն է Քետուրէն ծնեալ Աբրահամու որդւոց նախկին գաղթականութիւնն և հետ զհետէ դէպ ի հիւսիս յառաջելս տարածուիլը, ազգախառնութեամբ յաբեթածին կամ արիական ազգաց հետ։

Այս սահմանին մէջ է յիրաւի (այսինքն ի Մարս) Մոգ կամ Մագ գաւառը զոր կը յիշէ Հերոդոտոս. այս սահմանիս մէջ էին (այսինքն՝ Քաղդեացւոց սահմանակից Հայոց մեծաց գաւառը, Մոկք և Առանձնակ Մոկս, ուր կը յիշատակուի նաև տեղի ինչ կոչեցեալ Մոգս՝ ըստ Հ. Ղուկ. Ինճիճեանի[2]։ Այս սահմանիս վրայ է (այսինքն՝ Պարսից և Հայոց սահմանակից) «ազգն և երկիր Մոգուց», զոր կը յիշատակէ Բարդուղիմէոս Առաքելոյ վկայաբանութիւնը, և այդ տեղէն է՝ որ յետ քարոզելոյն՝ Հայոց առաքեալը կը մտնէ ի Գողթան գաւառ։ Առ այս յոյժ հետաքրքրական և բնորոշ է Վկայաբանութեան մեզ տուած ուղեցոյցը՝ նկատմամբ Բարդուղիմէոսի քարոզած երկիրներուն։ Սա նախ Թադէոս Առաքելոյն հետ կը մտնէ Հնդկաց սահմանակից Պարսից «Եդեմ» քաղաքը, ուսկից Թադէոս կը թեակոխէ ի Հնդկաստան. իսկ Բարդուղիմէոս կը քարոզէ նախ ի կողմանս Մարաց, ապա Պարթևաց, ապա Պարսից և Մոգուց աշխարհը, ապա ի Գողթան, ապա ի Հեր և Զարևանդ գաւառս Հայոց։

Դարձեալ նշանակալից է՝ նկատմամբ

1. Յովհ. Ոսկեբերանն ևս սոյնը կը հաստատէ երկիցս և երիցս՝ գրելով ի Մեկն. Մատթէի. զի յետ ըսելոյ թէ «Յառաջ քան զբազում ժամանակս աստղ երևեալ տեսանէին յիւրեանց աշխարհին». ապա կը յիշէ այդ աշխարհը ևս, ըսելով. «Իսկ նա (աստղն) ի հիւսիսոյ՝ ի հարաւակողմն կոյս գնայր, քանզի Պաղեստինացւոց աշխարհն ի հարաւոյ կուսէ Պարսից կայ... Զի Հրէայքն ի մոգուցն լսէին, եթէ աստղն անդէն ի Պարսից աշխարհին քարոզեաց... Եւ նախ ի պարսկական բարբառոյն ուսանիցին զայն ինչ՝ զոր ի մարգարէից չկամէին ուսանել»։

2. Տես Հնախ. Հայ. հտ. Գ. եր. 52, և Մեծ Հայք, եր. 167։

Հայոց՝ Մոգուց ազգին և աշխարհի չորս աստուածներուն պաշտաման վերաբերեալ մասը, այսինքն են Հիդիու (Արեն), Սեպայ, Արես, և Պեհեայ. որոնց երկու առաջիններէն մին, այն է Արեն, կեղծ Եպիփանի զրոյցին մէջ եղած է թագաւոր Հայոց՝ յերկրպագութեան Նորածին արքային Յիսուսի, իսկ միւսը՝ թագաւոր Սաբայ։ Այս սահմաններուն վրայ է (այն է ի Հեր և Զարեւանդ) որ Զորոաստր = (Սեմ) Մոգի գրաւոր և անգիր աւանդութիւնները[1] կը շրջէին, ամենահին ժամանակներէ ի վեր, իբրև տարածողի աստուածպետական կրօնից և գիտութիւններու։ Հոս կը շրջէին Բակտրիացւոց թագաւորին Զրադաշտ Մոգի զրոյցները (552), որ ըստ հայ աւանդութեան Քրիստոսէ 2,000 տարի յառաջ՝ հակառակ Ասորեստանեայց և Բաբելացւոց՝ միաստուածութեան աղանդը հնարեց, կոչելով Զրուանը՝ հայր աստուածոց. և ըստ Սուիդասայ՝ Տրոյիոյ պատերազմէն 500 տարի յառաջ կ'ապրէր։ Հոս (այսինքն է Արայի դաշտին կամ Այրարատի մէջ) տեղի ունեցեր են Էռ (= Արմենիոս) Մոգի բնակութիւնը, զոր կը յիշատակէ Պղատոն, Արայի և Յարալէզներու զրոյցներով, զոր Անանունը՝ Աբրահամու ընդոծին Մարսեակի և Արմենակայ հետ թերևս նոյնացուցած է։ Հոս (այսինքն Պարսից և Միջագետաց Հայոց) մէջ է որ երեսուն և հինգ տարի շրջած և քարոզած կ'աւանդուի Բաղաամ Մոգը՝ քարոզելով Յակոբայ աստղը և Մեսիայի («այր յիսրայէլէ») գալուստն և տէրութիւնը։

Այդ եռապետեան աշխարհաց և ազգերու ժողովուրդներն են, որ կը կոչուին ի մարգարէից[2] և կը համախմբուին Կիւրոսի՝ քրիստոսանուն թագաւորի և Մոգի շուրջը՝ անօրէն Բաբելոնէն վրէժ լուծելու համար։ Պարսից և Հայոց մէջ է, որ անդուստ ի վերուստ կազմուեցան Մոգուց եռապետական և հզօր դասակարգութիւններ, գրեթէ թագաւորական իշխանութեամբ, ինչպէս ցոյց կու տան մեզ Ագաթանգեղոս և Զենոբ Գլակ՝ Տարօնի Պատմութեան մէջ. և ըստ Թէոդ. Նէօլդէկէի (Gesch. der Perser und Araber, s. 450)։ Պարսից և Հայոց Պարթև-Արշակունի թագաւորներն իսկ կը պարապէին մոգութեամբ և աստեղաբաշխութեամբ. այնպէս որ հռովմէական կայսրն անգամ Ներոն՝ ըստ վկայութեան Տակիտոսի՝[3] Հայոց Տիրիր (Tiridate) թագաւորէն կ'ուսանէր այդ արուեստը։ Պաթևաց հարստութեան վերջին թագաւորն իսկ՝ Արտաւան Դ. Քրիստոսի թուականին Դ. դարում դեռ այդ արուեստով կը պարապէր, և աստեղաբաշխութեամբ գուշակելով իր աղէտալի մահը, քաջութեամբ կը դիմագրաւէր Արտաշրի, ըստ յուն. Ագաթանգեղոսի և այլոց պատմագրաց։

*
* *

Արդ՝ բոլոր այս և ասոնց նման դեռ ուրիշ զրոյցները, զորոնք զանց ըրինք համառօտութեան համար, ցոյց կու տան մեզ՝ թէ Քրիստոսի ծննդեան ժամանակ երկրպագութեան եկող Մոգերն ևս այդ երեք աշխարհներէն էին, որոնց վրայ կը տիրէին Պարթևազն կամ քետուրածին թագաւորներ, զորս կեղծ Եպիփանը «թագաւորք Գոգայ և Մոգայ» ևս անուանած է։ Եւ այս բանիս կարելի է մի այլ ապացոյց համարել և՛ այն պարագայն, որ այդ աշխարհաց և ազգաց երեք թագաւորները՝ Զանտուն, Աշրաւ և Արեն իրարու հարազատ կամ եղբայր ևս կոչուած են, իբրև նշանակ մերձաւոր ազգակցութեան, ինչպէս յառաջագոյն անոնց նախորդները Արշակ Մեծ և Վաղարշակ և վերջէն ալ Արտաւան Դ. և

1. Տես Հ. Ղ. Ինճիճեան, Հնախ. հտ. Ա. եր. 286–290, հտ. Գ. 43, 44։

2. Եսայ ԽԵ. 1։ Զաք. Գ. 8, Ա. Եզր. Բ. 2։

3. Տես Annales, lib. XVI.

Մեծն Խոսրով եղբայրակիցք անուանուած են մի և նոյն պատճառաւ։

Մէկ բան մը միայն դժուարահաւատալի կ'երևի մեզ այս գրոյցիս մէջ. այս ինքն՝ կարելի՞ բան է որ տասուերկու բիւր զօրօք և պատրաստութեամբ այդքան թագաւորներ Պաղեստին եկած ըլլան և պատմութիւնը բոլորովին լռած ըլլայ անոնց մասին։

Այս դժուարութիւնս անշուշտ տեսնելով նաև գրոյցիս հեղինակը, ուզած է զայն հաւատարմացնել՝ կապելով զայն կրկին ուրիշ դէպքերու հետ, այն է՝ Օգոստոս ինքնակալին ըրած տիեզերական աշխարհագիրն, որու համար ոչ միայն հրամաններ, այլ նաև դեսպաններ ղրկուեցան առ ամենայն իշխանս և հարկատու թագաւորս Պարսից, Պարթևաց, Հայոց, Հնդկաց և այլն. և երկրորդ արտասովոր աստղին երևումն և Յիսուսի ծնունդը մի և նոյն ժամանակ՝ մէկ կողմէն՝ և միւս կողմէն ալ Աբգարու գահակալութիւնը յիշեալ ազգաց և զօրաց օգնութեամբ։ Այս բաներս որչափ որ բնական են և պատմական, բայց չեն համապատասխաներ կարծես Աւետարանական պատմուածքին, որ քաղաքականէն տարբեր պատճառ մը կուտայ Մոգուց գալստեան և երկրպագութեան։ Հետևաբար՝ ինձ աւելի հաւանական կը թուի ըսել, թէ նորածին Յիսուսին երկրպագութեան եկողներն ոչ թէ յիշեալ ազգաց թագաւորներն էին՝ որոնց անուանքը մեզ յայտնի են, այլ կրօնական դասակարգութեանց գլուխներ, կամ լաւ ևս Մովպետաց Մովպետներ (= Մոգերն). որոնք՝ ինչպէս ըսուեցաւ՝ թագաւորական պատիւ ունէին։ Այս կը տեսնուի նաև անոնց կրած օտարոտի անուններէն, որոնք աւելի կրօնական նշանակութիւն ունին ընդհանրապէս. իսկ ի մասնաւորի Արևն էր — ըստ Վկայաբանութեան Ս. Բարդուղիմեայ — Մոգուց երկրում պաշտուած աստուածութիւնը, որուն պաշտօղքն ալ կը կոչուէին մինչև ԺԱ.—ԺԲ. Դար Արևորդիք[1]։ Իսկ Արշաւիրն էր Բաբելոնի թագաւոր՝ ըստ Դանիէլի մարգարէութեան, որ սակայն Եպիփան Կիպրացւոյն վերագրուած մի ուրիշ գրութեան[2] մէջ՝ Հայոց Տիգրան թագաւորին և Աբգարու իսկ ժամանակակից համարուած է ընդհակառակն. և նոյն իսկ առաջնոյն ձեռքով սպանուած։ Բ. ինչպէս Աբգարու դարձը՝ Ադդէի, այսպէս և Մոգերուն որ Բարդուղիմէոս առաքելոյն ձեռքով եղած կը պատմուի[3], — յիշեալ վաւերական և հնագոյն վկայաբանութեան մէջ, — զայս կը հաստատեն. այնու զի պատմութեան մէջ սակաւադէպ է մոլեռանդն կրօնապետներու՝ այսպիսի յօժարակամ և դիւրին դարձն ի քրիստոնէութիւն։ Այս բանս ուրիշ կերպ չի կրնար մեկնուիլ, բայց եթէ ըսել, որ ստուգիւ դոցա մէջ պահուած էր Մեսիային կամ Աստուածորդւոյն մարդանալու աւանդութիւնը դարուց ի դարս. և թէ մանաւանդ ի ծննդեանն գալով յերկրպագութիւն, ականատես եղած էին արդէն Յիսուսի աստուածութեան. և յետոյ լսելով յԱռաքելոյն նաև անոր մահը և փառաւոր յարութիւնը՝ սիրայօժար հրաժարեցան ոչ միայն ի սնոտի պաշտամանէն, այլ նոյն իսկ իրենք եղան քարոզ և տարածող սուրբ հաւատքին յարևելս։

Յոյժ նշանաւոր է և շահագրգիռ Մոգուց երկրպագութեան գալու մասին հայ-

---

1. Տես Գր. Մագիստրոս, Թուղթք. Ն. Շնորհալի. Զենոբ. Պատմ. Տարօնոյ, և այլն.

2. Որուն խորագիրն է. «Երանելոյն Եպիփանու Կիպրացւոյ ասացեալ՝ Յաղագս նկարեալ տէրունական պատկերին ի Դաստառակի սրբոյ»։

3. Զի յետ ըսելոյ թէ «Գնաց ի կողմանս Պարսից և Մոգուց... և ի Գողթն գաւառ Հայոց», կը յաւելու. «Եւ մեծաւ յօժարութեամբ հաւանեցան և լուսաւորեցան մկրտութեամբ աւազանին։ Եթող անդ նոցա երիցունս՝ ի Մոգուց անտի, որ աշակերտեցան Առաքելոյն. և բազում զօրութիւնս կատարէր Աստուած ի ձեռն առաքելոյն այնոցիկ յամենայն տեղիս, ո՛ր եւ հասանէին նոքա, եւ զբազումս դարձուցին ի սնոտի պաշտամանէն»։

կական մի այլ աւանդութիւն։ Մեր Ե. Ոսկեփորիկին (Թիւ 176) մէջ, – գրուած ԺԴ – ԺԵ. դարում, – «Ժողովեալ բանք ի գրեանց և ի վարդապետացն Հայոց» խորագրեալ գլխուն մէջ (Թղ. 290բ) կայ հետևեալ հետաքրքրական տեղեկութիւնն՝ այսպէս. «Ուստի՞ են Մոգքն. յԱբրահամու՝ ի Կենդորայ, որ արձակեալ ի նմանէ՝ կային ի Միջագետս մինչև յելսն յԵգիպտոսէ. և ապա չոգան յարևելս, և յարեալ ի Պարս՝ բազմացեցին անդ։ – Ո՞րպէս եկին. զԲաղաամու մոգութիւնն ունէին. և յորժամ աստղն երեւեցաւ, իւրեանց արուեստ էր՝ ժողովեցան ի քննել. և տեսին ա՛յլ ձև, վասն զի աստղ ի գիշերի երևի, իսկ նա ի տուէ. սայ ընդ հարաւ ընթանայ, նա ընդ հիւսիս։ Հինաւուրց ծեր աղջիկ կայր՝ կոչեցին յատեանն հարցանել. և նա ասէ. Ես այլ ո՛չ ինչ կարեմ տեսանել. բայց երևի աղջիկ մի գեղեցիկ, և մանուկ մի ի գիրկն։ Եկին և երկու եղբարք, և Մինին որդի. անուանք նոցա՝ պարսկերէն Յովաք, Տատմաք, Որմիստ. և արաբ լեզուաւ՝ Բաբաղատ, Բագադիշ, Միայ։ Իսկ քաղդէերէն՝ Կալշրա, Բաղադիշմա, Բաղադիխուրդա։ Իսկ այլ լեզուաւ՝ Մելքոն, Գասպար, Բաղտասար։ Յովհան Ոսկիբերան զաստղըն «բանաւոր խմն և խօսուն» կոչէ և թէ զի՞նչ նշան երևէր յաստղն. մանուկ մի լուսաւոր և խաչ ի ձեռնն, որ հանդերձեալ էր խաչիլ։ Ուստի՞ էր ոսկին. Սամուէլ՝ Կարմնջաձորոյ հայր, յԱբրահամու տուած ոսկոյն ասէ։ ԺԲ զօրագլուխք էին. և նոյնքան հազար զօրս ունէին. զօրքն յԱնտիոք թողին, և ինքեանք ԺԵ արամբ եկին յԵրուսաղէմ։ Եւ տեսին զմանուկն ի գիրկս կուսին՝ որպէս ի կառս խաչին. և երկրպագեցին կամ Ե անգամ, և կամ Գ, որպէս Յակոբ՝ Եսաւայ։ Եւ հինգ ժամ կայր աւուրն։ Եւ աստղն երկոս ամաւ յառաջ երևեալ։ Եւ Քրիստոս գիշերն ծնաւ. նոքա յայգուցն անդ էին։ Քանի՞ կոտորած մանկանցն. – Ռ. ԴՃ. ԿԲ. էին, յութսուն և չորս գեղջէ»։

Այս վերջին հայկական զրոյցս անով իսկ բաղդաւոր է, զի ճանչցեր է ոչ միայն նախորդ հայկական չորս զրոյցները, զորոնք ի սկզբան գրութեանս յիշեցինք համառօտիւ, այլ և Եպիփանեանը. Սակայն մենք բաղդատելով ասորական Livre de Combat d'Adam ի (տես Migne, Diction. des Apochryphes, Tom. I, pag. 387) հետ՝ բառացի կերպով նոյն գտանք։ Սոյնը դարձեալ ազգագրական թելը կու տայ ձեռքերնիս որոնելու և որոշելու Մոգերու վերաբերեալ զրոյցներու կրկնակի աղբիւրները։

*
* *

ՅԱՒԵԼՈՒԱԾ. – Մոգերու զրոյցին հայկական յիշատակարաններն այսպէս ներկայացնելէն ետքը, տեսնենք այժմ նախ թէ անոնց անուանքն ի՞նչ աղերս ունին արևելեան և արևմտեան ուրիշ ազգերու գրականութեան մէջ պահուած անուններուն հետ։ Երկրորդ՝ թէ ի՞նչ և ինչպիսի՞ հնագոյն աղբիւրներէ յառաջ եկած են։

Մոգերու երրեակ թուով զրոյցն գրեթէ ընդհանուր է թէ՛ արևելեան և թէ՛ արևմըտեան գրականութեան մէջ, բայց ըստ անուան կամ ըստ ձայնին մեծապէս կը տարբերին իրարմէ։ Առ Եբրայեցիս[1] կը կոչուին Մագալատ = Magalat, որ կը նշանակէ նուիրակ, Գալգալատ = Galgalat, այն է՝ բարեպաշտ. Սարաքիմ = Sarachim, այսինքն է շնորհք։

Առ յոյնս յորջորջուած են Ապելլիոս = Apellius, այն է հաւատարիմ. Ամերոս = Amerus՝ խոնարհ. Դամասկոս = Damascus՝ որ է ողորմած։

1. Այսպէս կ'աւանդէ Զաքարիաս Քրիսոպոլսեցին (MSL. (LXXXVI. p. 83)։ Իսկ Պետրոս Կոմեստոր, որ 1170ի մօտերը կ'ապրէր, այդ անուանքն յունարէն կը համարի (MSL. IICC. pag. 1542) ընդ հակառակն, և յաջորդ անուանքն որ ստուգիւ յունական են՝ իբր եգիպտարէն կ'աւանդէ, որ չէ ուղիղ։

Ըստ եթովպացիրէն «Ադամգրքին» կոչուած են՝ Հոռ = Hor՝ իբր Թագաւոր Պարսից, Բասատեր = Basâter, Թագաւոր Սաբայ, Կարսուդան = Karsudan Թագաւոր Արևելից (տես H. Ewald a. a. O., pag. 136)։

Պարսկերէն լեզուով կոչուած են, — առանց ազգի և աշխարհի, — Վեհ-ամետ = Beh-âmed, այսինքն՝ ողջամբ եկեալ. Զուտ-ամետ = Zûd-amed, փոյթ եկեալ. կամ երագահաս. Դուրուստ-ամետ = Durust-amed, ի դէպ եկեալ (տես Th. Hyde a. a. O. pag. 378; F. Justi pag. 688)։

Վրացերէն, — Ժ. դարուն Տփղիս գրուած վրացերէն (գրուզերէն) Ձեռագրի մը համաձայն, — կոչուած են երեք Թագաւոր մոգերէն առաջինը՝ Վիսկարա = Wiscara, երկրորդն՝ Մելիքոնա = Melikona, երրորդն՝ Վալաստար = Walastar (տես M. Brosset, Notice sur un Manuscrit géorgien palimpseste, ect. St. Pétersbourg 1859, Tom. III, pag. 670)։

Աղեքսանդրեան — հելլենական գրականութեան մէջ, — ըստ Excerpta Latina Barbari, — կոչուած են Բիթիսարէա = Bithisarea, Մելիքիոր = Melichior, Գաթասպար — Gathaspa(r)։

Առ լատինս և արևմտեանս նման ձայնիւ կոչուած են Մելքիոր = Melchior, Գասպար = Caspar, և Բաղդասար = Balthasar. և առաջին ներմուծողն Պետա քահանայն եղած է, Զ. դարուն. որ և իւրաքանչիւրն իրենց արևելեան տարազով նկարագրած է. (տես Collecta et flores, Basilea 1563, Tom. III, p. 649)։

Առանց ուզելու հոս պարապիլ երեք Մոգուց անուանց իրարմէ այնքան տարբեր ձևով գրուելուն և անոնց տրուած ինքնագիտ նշանակութեանց, կրնանք ըսել՝ որ արևելքէն — հաւանօրէն Միջագետքում — ծագումն առեր են, և անտի անցեր են ի Բիւթանիա և յԱրևմուտս։ Եւ դիտելով որ Պետայի (որմէ և լատին անուանակոչութիւնքն Melchior, Caspar կամ Gaspar, և Balthasar) ինչպէս և հայկական նորագոյն յիշատակարանաց ընծայուած Մելքոն, Գասպար և Բաղդասար անուանքն համաձայն են, գէթ ըստ ձևոյն, Աղեքսանդրեան-հելլենական գրականութեան մեզ ընծայած անուանաձևերուն, ուստի ամենահաւանական է ըսել՝ որ վերջինս եղած ըլլայ իբր անմիջական աղբիւր երեք Մոգերու գրոյցին ի փոքր Ասիա և յԱրևմուտս։ Իսկ թէ Աղեք-հել. գրականութիւնն ուսկի՞ց ժառանգած է, լաւ յայտնի չէ։ Բանասէրներէն ոմանք[1] Melchior անունը եբրայեցերէն עלך אור-ով կը մեկնեն, այսինքն է՝ թագաւոր լուսոյ։ Balthasar քաղդեական անուն է (տես Դանիէլ Ա. 7, Բ. 26, Դ. 5)։ Իսկ Caspar որ ըստ Ա. Գուտշմիդի[2] է = Gathaspa(r), անգղիացի դրամագէտ Կոննինգամ[3] կը նոյնացնէ հնդիկ-պարթևական Գոնդոֆարեսի հետ, հանելով զայն Գունդափորոս ծանօթ թագաւորի դրամէն. որուն օրով ըստ վկայութեան Legenda Aureaի՝ Թովմաս առաքեալն քրիստոնէութիւնը քարոզեց ի Հնդիկս։

Յամենայն դէպս՝ որովհետև Գունդափորոս որ յունական դահեկանաց մէջ Γ..δοφέρρης ևս կոչուած է՝ կը նոյնանայ լեզուաբանօրէն հին պարսկերէն V'iñdafra կամ V'iñdafrana անուան հետ. ուստի ամենայն հաւանականութեամբ կարելի է հետևցնել, որ երեք Թագաւոր Մոգերու անուանակոչութեանց սկզբնաղբիւրն քաղդեապարսկական եղած ըլլալու է։ Նշա-

1. F. L. K. Weigand: *Deutsches Wörterbuch*. Giessen 1876. Bd. II, pag. 71.

2. Die Königsnamen in den apokryphen Apostelgeschichten; Frankfurt a M. 1864, Iahrg. XIX Neue Folge, s. 167 und 1879, Jhg. XXXIV, p. 340.

3. A Conningham «Coins of indian Buddhist Satraps, with greek inscriptions, in Journal of the Asiat. Society of Bengal». Calcutta 1855, vol. XXIII. pag. 679.

նաւոր է առ այս Վարդանայ կամ Վանական Վարդապետի հետեւեալ տեղեկութիւնը (տես մեր Թ. 425 Ձեռագիրն, այն է 1366 թուականին գրուած ԻԵ. Ոսկիփորիկն). «Մոգքն երկու տարով յառաջ գուշակեցան աստեղբ, և յերկրորդում աւուր ծննդեան երկրպագեցին Յիսուսի: Եւ աստղն չէր ի սովորական աստեղաց. և մոգութիւն ազանդի անուն է, բայց եկեղեցւոյ վարդապետք՝ թագաւորք ասեն, և նկարիչք դրոշմեն. յԱբրահամու ծննդոցն ամեն ի կենդոշրայ: Երկոտասան հազար զօրօք եկին, ասեն, և թողին զզօրքն ի վերայ Եփրատայ՝ առ արքային Հայոց, զի ազգայինք էին մեր թագաւորին: Հայերէն անուանք մոգուցն Մելքոն, Գասպար, Բաղդասար. և քաղդէարէն՝ Կագբա, Բադադիլմա, Բադադխարիդա. և ըստ այլ լեզուի՝ այլ ինչ»:

Անտարակոյս գրուածիս հեղինակն Եպիփանեան գրաւոր զրոյցը կարդացեր է. սակայն այսու աւելի բաղդաւոր է, որ քաղդէարէն անուանքն ևս կու տայ որոշակի, որ ցարդ կը պակսէին:

Իսկ գալով հայ գրականութեան մէջ պահուած միւս զրոյցներուն, — այսինքն՝ տպ. երրորդ զրոյցն և Եպիփանեան անտիպ զրոյցն, — ուր Մոգերու թիւն ընդհականակն երկոտասանեակ եղած կ'աւանդուի, բոլորովին տարբեր անուանակոչութեամբ, եզական իմն է ստուգիւ: Յունական և լատին գրականութեան մէջ անոր նմանը չկայ, և հետեւաբար՝ անօգուտ է հոն որոնել անոնց սկզբնաղբիւրը: Միայն եթովպականն՝ ըստ մասին, և ասորականը՝ շատ սերտ աղերս ցոյց կու տան անոնց հետ, գէթ թիւին նկատմամբ: Եթովպականը կ'ընծայէ մեզ հետեւեալ անուանքը. *Hor*, *Basâter*, *Karsudan* (ըստ Ադամգրոց = Vita Adami), *Kesâd*, *Albetâr*, *Aunoson* (տես I. Ludolf: « Lexicon Aethiopico-Latinum». London 1661, unter Albetâr). *Minsuzam*, *Badsiba*, Likon (տես A. Ant. d'Abbadie: Catalogue Raisonné des Manuscrits Éthiopiens, Paris MDCCCLIX, pag. 114). *Mensor*, *Saïr*, *Theokeno* (ըստ E. Nestleի a. a. O. pag. 71). Որչափ որ անուանքս իրարու քով հաւաքուած երկոտասանեակ թիւը կը կազմեն, բայց որովհետև իրարմէ տարբեր գրուածոց մէջ կը գտնուին երեք երեք, ուստի կրնան նոյն իսկ երրեակ թիւին պատկանող սկզբնաղբիւրէն առաջ եկած ըլլալ, և հետեւաբար տարակուսական:

Իսկ ասորի գրականութեան ազգագրական հեղինակներն, օրինակի աղագաւ, Թէոդորոս Բար Կոնի (= Theodorus Bar Kônî[1]) եպիսկոպոսն յամին 893, Բար Բահլուլ (= Bar Bahlûl[2]) († 965), Միքայէլ Մեծն (Michel le Grand[3]) 1166-1190ին, Դիոնիսիոս Բար Սալիբի (= Dionysios Bar Salibi[4]) 1171ին, Սողոմոն Բասրացի (= Salomon de Bassora[5]) 1222ին, աւելի նշանակալից են: Ժամանակագիրներէս առաջինը, երրորդն և հինգերորդը՝ կրկին անուանացանկեր կը ներկայացնեն մեզ, այսինքն՝ հայր անուանեալ թագաւոր Մոգերուն և անոնց որդիներուն, զորոնք Դոկտ. Հուգոյ Կէհրէր՝ ասորի բնագրօք և գերմ. թարգմանութեամբ դիմացէ դիմաց դրեր է իւր դեռ նոր ի լոյս ընծայեալ գովելի գործին Ա. հտր.ի 72–73 էջերում, համեմատական սիւնակներով. իսկ միւսներն՝ մի մի անուանացանկեր: Սողոմոն Բասրացւոյ առաջին ցանկով ներկայացուած Մոգերու անուանքն՝ թէպէտև արեւելեան՝ գրեթէ ամէնքն ևս յունական վերջաւորութիւն ունին, այսինքն *es* և *us*. իսկ երկրորդին՝ ամէնքն ևս *ïով* կը վերջա-

1. Տես «Buch der Scolien» առ. Ձեռք. անտիպ:
2. Th. Hyde, Hist. Religionis Veterum Persarum eorumque Magorum, Oxonii MDCC, pag. 378.
3. J. B. Chabot: «Chronique. Paris 1900, Tom. II. Fasc. 2. pag. 141.
4. In Evang. in « Corpus Script. Christia. Orient. Script. Syri, Romae MDCCCCVI, tom. XCVII, Fasc. 1, pag. 68.
5. Տես S. Assemani: Bibl. Orient. Tom. III. pars. 1 pag. 316.

նան, – ի բաց առեալ Chosroae և Baldad անուանքն, – նման Ասորեստանեայ և խալդեան արձանագրութեան անուանց, և կամ վրացերենի. և հետևաբար աւելի հին աղբիւր մը մատնանիշ կ'ընեն։ Բ. Դիտելու կէտ մ'ալ այս է Սողոմոնի առաջին անուանացանկի նկատմամբ, այսինքն՝ առաջին չորս անուանքն՝ Zarvandades, Hormisdas, Gusnasaphus, Arsaces, որոնք ոսկի կ'ընծայեն Յիսուս մանկան, կը համապատասխանեն ասորերէն «Spelunca Thesaurorum»ի մէջ Պարսից թագաւոր Որմիզդ Մախոզդեանի = Hormizd de Makhôzdiն։ 5°, 6°, 7° և 8°րդն, այսինքն Zarvandades, Orrhoes, Artaxestes և Estunabudanes որ զմուռն կ'ընծայեն, կը համապատասխանեն Սաբացի թագաւորին Յազկերտի = Jezdigerd. իսկ 9°, 10°, 11°, և 12°րդն, այսինքն՝ Մարուքոս = Maruchus, Ասուերոս = Assuerus, Սարդալաքոս = Sardalachus, և Մերոդաքոս = Merodachus որք խունկ կ'ընծայեն, կը համապատասխանեն Սեբայի թագաւոր Պերոզին = Pêrôz։

Արդ՝ գիտելով քաջ որ ասոր. «Spelunca Thesaurorum»ի մէջ բերուած եռանուանքն՝ Սասանեան ծանօթ թագաւորներ են, տարակոյս չկայ որ պարսկական նորագոյն աղբերէ մը յառաջացած են։ Իսկ միւս 12 անուանքն որ մասամբ մարապարսիկ, և մասամբ ալ քաղդեա-պարթևական են, զատ և հին աղբիւրէ մը հանուած են, համաձայն Ս. Գրոց Եօթանասնից կամ Վուլգատայի թարգմանութեան յերիւրեալք։

Ասորական միւս անուանացանկերն եւս որչափ որ ինչ ինչ յորջորջումներով իրարու կը համաձայնին, սակայն ընդհանուր առնելով՝ իրարմէ մեծապէս կը տարբերին. զի ոմանց մէջ բաբելա – պարսկական, և ոմանց ալ պարթեւ – արշակունի անուանքն զգալի են։ Հայկական Բ. և Գ. գրոյցներուն մէջ պահուած 12 Մոգուց անուանացանկքն ասոնցմէ ոչ միոյն հետ աղերս չունին բնաւ. այլ իրենց նոյնայանգ վերջաւորութեամբ կարծէք թէ մի միայն ազգի և լեզուի յատուկ ըլլան, թէպէտև ինչպէս այդ լեզուին՝ այսպէս և աղբեր համար չենք պնդեր որ բացարձակօրէն աւելի պարթևական ըլլան՝ քան քաղդեական. և այս պատճառաւ իսկ ձեռնհաս բանասիրաց ուշադրութեան արժանի։ Իսկ Եպիփանեան ծանրակշիռ գրոյցին մեզ ընծայած անուանացանկին՝ ասորականին հետ ունեցած աղերսը ցուցնելու համար, դնենք զայն ի միջի Th. Bar Kônîի և Միքայէլի անուանացանկերուն.

| TH. BAR KÔNÎ | ԵՊԻՓԱՆ | ՄԻՔ. ԱՍՈՐԻ | |
|---|---|---|---|
| 1. *Zarwandâd* | Զահուռն (որդի Արտունայ) | *Dahdnadur* | որդի Artâbanի |
| 2. *Hurmizd* | Արեն | Waštaph | » Gudpirի |
| 3. Gušnasp | Զուազ | Aršak | » Mahdouqի |
| 4. Erôšakh | Զարիհու | Zerwand | » Waroudoudի |
| 5. Zarwandâd | Աշտուն կամ Աշտթան | *Ariwah* | » Kosrauի |
| 6. *Erjâho* | Մաքազ | *Artahšišt* | » Holîtի |
| 7. *Arṭaḥšišt* | (խսերենեզրոկի) | *Eštanboudan* | » Sišrawanի |
| 8. *Estad* n'budn | Ահիշրախ | *Mahdou(* | » Hawahmի |
| 9. *Mahroq* | Տարտնայ | *Aḥšireš* | » Sahbanի |
| 10. *Aḥšireš* | Մարեհի | Sardanah | » Buldanի |
| 11. Sḷdḥ (Sórdolachus) | Արտաշիզ | Mardouk | » Bilի |
| 12. Mardoq | Աշիր | Pir–Sabour | (առաջնորդ Մոգուց) |

Բ. օր. այն է հնագոյնն ունի՝ Զահառուն, Աշխար, Արև, Զուազ, Զարհուս, Արտաշիզ, Աշտրան, Մաքազ, Անիշրան, Տարտնան, Մարխի, Աւշիր։ Իսկ Գ. օր. ունի փոխանակ Մարհնի կամ Մարխի՝ Մարհի։ «Իսերեզրոկի» ընդօրինակութեան սխալմունք կամ աղաւաղութիւն մ՚ըլլալու է, զի Բ. և Գ. օրինակաց մէջ կը պակսի. ուստի անոր փոխանակելի է Աշխար՝ զոր ունին սոյն օրինակներն։ Նոյնպիսի դիտողութիւններ կարելի էր ընել նաև ասորական անուանացանկերուն վրայ. բայց համառօտութեան համար զանց կ՚ընենք, բաւականանալով հետևեալ համեմատութեամբք։

Հայերէն բնագրոց տարբերութիւնքը նըշանակելէն ետքը, այժմ կարող ենք ըսել՝ որ անուններէս շատերը կը նոյնանան ասորի բնագրոց հետ։ Եւ ստուգիւ, Սողոմոնի Ա. ցանկի Zarwandadesը, = Th. Bk. Zarvandâdը = B. Bl. Zerwand = Ds. Zodonad = Mich. Zerwand = Եպ. Զահառունի։ B. Bl. Hadûndad = Ds. Hidondad = Mich. Dahdnadur = Եպ. Տարտնայ։ Sl. Artaxestes = B.Bl. Artachshàsht = Bk, Artahšišt = Եպ. Արտաշիզ։ Sl. Estunabudanes = Bk. Estadn'budn = B.Bl. Eshtanbûzon = Ds. Ashtonbozan = Mich. Estanbudan = Եպ. Աշտրան (– Զուազ)։ B.Bl. Shethàph = Ds. Shethoph = Mich. Waštaph = Եպ. Աշխար։ B.Bl. Achshiresh = Ds. Ahirosh = Th. Bk. Ahšireš = Mich. Ahšireš = Եպ. Անիշրախ։ Sl. Maruchus = B.Bl. Mahdûk = Th. Bk. Mahroq = Mich. Mahdouq = Եպ. Մարխի կամ Մարհի, Մարիհի։ B.Bl. Arihu = Ds. Arihu = Th. Bk. Erjaho = Եպ. Զարհուս, Զարհուս։ Mich. Ariwa = Եպ. Արևն։ Sl. Assuerus = Եպ. Աւշիր։ Ուստի՝ ինչպէս կը տեսնեն ընթերցողք՝ երկու անուն կը մնան միայն հայկ. անուանացանկիս մէջ, այն է Զուազ և Մաքազ, որ կը մնան դուրս, միւսներն առ հասարակ կը նոյնացուին ասորացանկերու անուանց հետ. և անոնց պատճառն ալ ասորի և հայ բնագրոց խանգարման մէջ որոնելի է։ Արդ՝ երկուստեք անուններու նոյնութիւնն իբրև ստոյգ և դրական իրողութիւն նկատելով, կը հետևի ուրեմն, որ կամ երկոտասան Մոգ թագաւորներու ասորի և հայ գրուցին հասարակաց աղբիւր մ՚եղած է, կամ հայն՝ ասորոյն վրայ յերիւրուած, և կամ ասորերէնը հայերենի։

Նկատմամբ եզրակացութեանս առաջին կէտին՝ դիտել կը տրուի, որ Պետէր Աբէլարդ առիթ ունենալով գրել Մոգուց երկրպագութեան վրայ, մատնանիշ կ՚ընէ՝ իր ընթերցողներուն «Գիրք Սեթայ» անվաւեր գրութիւնը, և իբրև անկէ առած կը խօսի[1] երկոտասան թագաւոր Մոգերու վրայ։ Սակայն մեր գիտցածին համեմատ՝ նախ որ Հին և Նոր կտակարանաց Անվաւեր գրութեանց ոչ միոյն մէջ այժմ չի գտնուիր այնպիսի պարագայալից և ոճով պատմութիւն մը, ինչպիսին կը ներկայացնէ մեզ կեղծ Եպիփանի «Ի սկզբնագիր արարածոց» ևն հայկական խմբագրութիւնը։ Եւ եթէ իրօք գոյութիւն ունեցած ևս ըլլար այն, անշուշտ Պէտայէն սկսեալ արևմտեան հնագոյն մատենագիրներ ևս օգտուած պիտ՚ ըլլային անկէ. մինչդեռ ասոնք ամէնքն ալ երրեակ Մոգերու գրոյցը միայն կը ճանչնան։ Ապա ուրեմն հիմնաւոր կռուան մը չկայ ասորական[2] կամ եբրայական հասարակաց աղբիւրի մը գոյութեան։

---

1. Տես Mst. CLXXVII, pag. 13.

2. Միք. Ասորի. Chron. ed. Venise. pag. 89, յետ յիշելու Եւսեբ. Կեսարացւոյ և Գր. Նիւսացւոյ կարծիքը Մոգուց մասին, ապա կը յարէ թէ Յակոբ Եդեսացի առանձին գիրք մը յօրինած էր, ուր կը պատմէր թէ, երկրպագութեան եկող Մոգերն սեմական ցեղէ էին. և թէ այն գիրքէն հանած էր ինքը վերը մէջ բերուած 12 Մոգերու անուանացանկը։ Սակայն Յակ. Եդեսացւոյ այսպիսի գրուած մը ցարդ յայտնուած չէ, և Ասեմանի իսկ բնաւ յիշատակութիւն չըներ անոր։ Բ.

*կարելի չէ դարձեալ՝ որ հայերէնն՝ ասորի յիշեալ ժամանակագիրներէն թարգմանուած ըլլայ. վասն զի նախ որ անոնց ամենէն աւելի երէց է ժամանակաւ, ինչպէս ցոյց կու տան Եպիփան Կիպրացւոյ անուն[illegible] և գրութեանս լեզուին և շարադրութեան մաքրութիւնն, որ Զ. դարու առաջին կէսէն Է. դարուն յատուկ կը տեսնուին։ Բ. Յիշեալ ասորի հեղինակներու աւանդած գրոյցներն իսկ՝ համեմատութեամբ Եպիփանի ճառին՝ կցկտուր և համառօտ բաներ են։*

*Ուստի՝ կը մնայ ընդունիլ, ըստ իս, իբրև ամենահաւանական վերջին կէտը, այսինքն թէ Եպիփանի հայկ. խմբագրութիւնն պէտք է որ եղած ըլլայ, հասարակաց աղբիւր ասորի ժամանակագրաց։ Եւ այս բանիս ունինք երկու հաստատուն կռուաններ. Ա. Միքայէլ Մեծն՝ իր ժամանակագրութեան յիշեալ տեղում* 12 *Մոգերու անուանքը դնելէն ետքը՝ կը յաւելցնէ իր կողմէն.* «Il y en a qui reculent le voyage des Mages deux mois après la naissance de Jésus-Christ; mais *ceux qui sont dans le vrai*, *affirment que les Mages, avertis deux ans d'avance* (l'apparition de) *l'étoile*, se mirent en route et arrivèrent (à Bethléem) le lendemain de la naissance du Christ», ect։ *Արդ Եպիփանեան գրոյցի մէջ ևս մի և նոյն բանը աւանդուած է «Որ զամիսս երեքտասան յուղի անկեալ գային» բացատրութեամբ, վարդապետաց մէջ շրջող երկու տարբեր կարծիքն ևս յառաջ բերելով։ Բ. Աւելի զօրեղ փաստ մ' է Արևե զուտ հայկական[1] անուան գոյութիւնն՝ ասորական գրոյցի մէջ, որ ուրիշ կերպով չմեկնուիր, բայց եթէ ըսել՝ որ հայկական գրոյցն սկզբնաղբիւր եղեր է ասորականին։ Եթէ չեմ սխալիր՝ Ը. դարու հայազգի ժամանակագրին Դիոն. Թէլմահարցւոյ[2] ևս ծանօթ էր հաւանօրէն Եպիփանեան յիշեալ գրութիւնը։*

*Մեր խօսքը դեռ չկնքած, կրնանք ըսել այժմ, թէ կը սխալի Հուգոյ Կէհրէր[3] երբ կը հետևցնէ, թէ Մոգերու երկոտասանեակ թիւն միայն ասորականին կը թուի յատուկ ըլլալ* («Die Zwölfzahl scheint für Syrien spezifisch zu sein)։ *Գրութեանս՝ Եպիփանին վաւերական գործ լինելու կամ ոչ խնդիրը ուրիշ առթի և ժամանակի կը թողունք. իսկ այժմ նկատելով անոր ազգագրական մեծ նշանակութիւնն և կարևորութիւնը, կը հրաւիրենք անոր վրայ եւրոպական գիտնոց ուշադրութիւնը, յուսալով որ այնուհետև յառաջ եկած արդիւնքն նպաստաւոր պիտ՝ ըլլան նաև Պարթև — Արշակունիններու ծագման և Մ. Խորենացւոյ նկատմամբ ։*

---

*ըստ Յակ. Եդեսացւոյ Մոգերն* 3,000 *հեծելազօրօք և* 3,000 *հետևակօք եկած կ'աւանդուին. մինչդեռ ըստ Եպիփանի* 24000 *հեծեալք են՝ ուրոյն ի հետևակաց։*

1. *Տես* H. Hübschmann, Arm. Grammatik, V Theil, s. 124.

2. *Տես* Chronique de Denys de Telmahar, publ. par M. Tullberg, Upsal, 1850.

3. *Տես* Die Heilige. Drei Könige, in Litteratur und Kunst I. Bd. s. 65.

